# ԱՒԵՏԱՐԱՆ

# ԸՍՏ ՄԱՐԿՈՍԻ

## ԳԼՈՒԽ Ա

1 Աստուծոյ Որդւոյն Յիսուս Քրիստոսի աւետարանին
2 սկիզբը։ Ինչպէս մարգարէներուն մէջ գրուած է.
Ահա ես իմ դեսպանս կը ղրկեմ քու երեսիդ առ-
ջեւէն, որ քու ճամբադ պիտի պատրաստէ քու առ-
3 ջեւդ։ Անապատի մէջ կանչողին ձայնը, Տէրոջը
ճամբան պատրաստեցէք, անոր շաւիղները շիտկեցէք։
4 Յովհաննէս անապատին մէջ կը մկրտէր, և ապաշ-
խարութեան մկրտութիւն կը քարոզէր մեղքերու
5 թողութեան համար։ Ու բոլոր Հրէաստանի երկիրը
ու Երուսաղեմացիք կ'երթային անոր, ու ամէնը կը
մկրտուէին անկէ Յորդանան գետին մէջ՝ մեղքերնին
6 խոստովանելով։ Եւ Յովհաննէս հագեր էր ուղտի
մազ, և իր մէջքը կաշիէ գօտի, ու իր կերակուրը
7 մարախ ու վայրենի մեղր էր։ Եւ կը քարոզէր ու
կ'ըսէր, Իմ ետեւէս ինծմէ զօրաւորը կու գայ, որ ես
արժանի չեմ ծռելու և անոր կօշիկներուն կապերը
8 արձակելու։ Ես ձեզ ջրով մկրտեցի, բայց անիկա
ձեզ Սուրբ Հոգիով պիտի մկրտէ։
9 Ու եղաւ որ այն օրերը Յիսուս Գալիլեայի Նազա-
րէթէն եկաւ, ու Յովհաննէսէ մկրտուեցաւ Յորդա-

10 նանու մէջ։ Եւ շուտ մը ջուրէն ելլելուն պէս եր-
կինքը բացուած տեսաւ, և Հոգին աղաւնիի պէս՝
11 որ իր վրայ կ'իջնէր։ Եւ ձայն մը եկաւ երկինքէն,
որ կ'ըսէր, Դուն ես իմ սիրելի Որդիս, որու հաւ-
ներ եմ։

12 Եւ շուտ մը Հոգին անապատը հանեց զանիկա
13 Ու քառասուն օր հոն էր անապատին մէջ՝ Սատա-
նայէ փորձուած, և գազաններուն հետ էր, ու հրեշ-
տակները իրեն սպասաւորութիւն կ'ընէին։
14 Եւ Յովհաննէսի մատնուելէն ետև Յիսուս Գա-
լիլեա եկաւ, Աստուծոյ արքայութեան աւետարանը
15 կը քարոզէր Ու կ'ըսէր, Թէ ժամանակը լրացած է,
և Աստուծոյ թագաւորութիւնը մօտեցած է. ապաշ-
խարեցէք ու աւետարանին հաւատացէք։
16 Երբ Գալիլեացւոց ծովուն քովէրը կը պտըտէր,
տեսաւ Սիմոնը ու Սիմոնի եղբայրը Անդրէասը, ծովը
17 ուռկան ձգած, վասն զի ձկնորս էին։ Եւ Յիսուս
ըսաւ անոնց, Իմ ետևէս եկէք, ու ես ձեզ ընեմ որ
18 մարդու որսորդ ըլլաք։ Անոնք ալ շուտ մը իրենց
19 ուռկանները թողուցին ու անոր ետևէն գացին։ Եւ
անկէ քիչ մը առաջ երթալով՝ տեսաւ Զեբեդեան
Յակոբոսը ու անոր եղբայրը Յովհաննէսը, որ անոնք
20 ալ նաւին մէջ ուռկանները կը կարկտէին։ Եւ շուտ
մը զանոնք կանչեց. անոնք ալ իրենց հայրը Զեբե-
դէոսը վարձկաններուն հետ նաւին մէջ ձգելով՝ ա-
նոր ետևէն գացին։

21 Ու մտան Կափառնայում. և իսկոյն շաբաթ օրը
22 ժողովարանը մտնելով՝ կը սորվեցնէր։ Եւ կը զարմա-
նային անոր վարդապետութեանը վրայ, վասն զի
իշխանութիւն ունեցողի մը պէս կը սորվեցնէր ա-

23 նոնց, ու ոչ թէ դպիրներուն պէս։ Եւ անոնց ժողո-
վարանին մէջ մարդ մը կար, որ պիղծ ոգի ունէր իր
24 ներսիդին, ու աղաղակեց՝ ըսելով, Թող տուր, դուն
մեզի հետ ի՞նչ բան ունիս, Յիսուս Նազովրեցի.
միթէ մեզ կորսնցնելո՞ւ եկար. գիտեմ քեզ՝ ո՛վ ես.
25 Աստուծոյ Սուրբը։ Եւ Յիսուս սաստեց անոր՝ ըսե-
26 լով, Պապանձէ ու ել անկէ։ Եւ պիղծ ոգին սաս-
տիկ ցնցեց զանիկա, ու մեծ ձայնով մը աղաղակեց
27 ու անկէ ելաւ։ Եւ ամէնքը զարմացան, այնպէս որ
իրարու հարցուփորձ կ'ընէին ու կ'ըսէին, Այս ի՞նչ
է. ի՞նչ նոր վարդապետութիւն է այս, որ իշխանու-
թիւնով պիղծ ոգիներուն ալ կը հրամայէ, ու իրեն
28 կը հնազանդին։ Եւ շուտ մը իր համբաւը Գալի-
լեացւոց ամէն կողմերը ելաւ։

29 Եւ շուտ մը ժողովարանէն ելլելով՝ Սիմոնի ու
Անդրէասի տունը մտան Յակոբոսի և Յովհաննէսի
30 հետ։ Ու Սիմոնի զոքանչը ջերմէ բռնուած՝ պառկած
31 էր, և շուտ մը անոր համար ըսին իրեն։ Ու Յիսուս
մօտեցաւ, անոր ձեռքէն բռնեց, վերցուց զանիկա.
և իսկոյն ջերմը թող տուաւ զանիկա, ու անոնց
սպասաւորութիւն կ'ընէր։

32 Ու երբ իրիկուն եղաւ, արեգակին մտած ատենը
բոլոր հիւանդները և դիւահարները իրեն կը բերէին։
33 Ու բոլոր քաղաքը դուռը ժողվուեր էր։ (34) Եւ
շատ հիւանդներ կերպ կերպ ցաւերէ՝ բժշկեց ու
շատ դևեր հանեց. ու դևերուն խօսիլ չէր տար,
վասն զի զինք կը ճանչնային։

35 Եւ առաւօտուն շատ կանուխ ելլելով դեռ չլուս-
ցած՝ ելաւ ու գնաց անապատ տեղ մը, և հոն ա-
36 ղօթք կ'ընէր։ Ու Սիմոն և իրեն հետ եղողները զա-

37 ցին անոր ետեւէն։ Ու երբ գտան զանիկա, ըսին ա-
38 նոր թէ Ամէնը քեզ կը փնտռեն։ Եւ ըսաւ անոնց,
Եկէք երթանք մերձակայ գիւղաքաղաքները, որպէս
զի հոն ալ քարոզեմ, քանզի այս բանին համար
39 ելեր եմ։ Եւ անոնց ժողովարաններուն մէջ կը քա-
րոզէր բոլոր Գալիլեայի մէջ, ու դեւեր կը հանէր։
40 Բորոտ մը եկաւ անոր, կ'աղաչէր, ծունկ կը դնէր
ու կ'ըսէր անոր, Եթէ ուզես, կրնաս զիս մաքրել։
41 Եւ Յիսուս խղճալով՝ ձեռքը երկնցուց, դպաւ անոր
42 ու ըսաւ անոր, Կ'ուզեմ, մաքրուէ։ Ու երբ այս
ըսաւ անոր, շուտ մը բորոտութիւնը անկէ գնաց, ու
43 մաքրուեցաւ։ Եւ սաստիկ պատուէր տալով անոր՝
շուտ մը դուրս հանեց զանիկա, ու ըսաւ անոր,
44 Զգոյշ կեցիր մարդո՛ւ բան մը չըսես, հապա գնա
քեզ քահանային ցուցուր, և տուր քու մաքրուելուդ
ընծան զոր Մովսէս պատուիրեց՝ անոնց վկայութիւն
45 ըլլալու համար։ Բայց անիկա ելլելով՝ սկսաւ շատ
հրատարակել ու բանը տարածել, այնպէս որ ա՛լ
ինք չէր կրնար յայտնի կերպով քաղաք մը մտնել.
հապա դուրսը անապատ տեղեր էր, և ամէն կողմե-
րէն իրեն կու գային։

## ԳԼ. Բ

1 Եւ նորէն Կափառնայում մտաւ քանի մը օրէն
2 ետեւ. Ու լսուեցաւ որ անիկա տան մէջ է, և շուտով
շատ մարդիկ ժողվուեցան, այնպէս որ ա՛լ տեղ
չկար, ոչ ալ դրանը քովերը. ու կը խօսէր անոնց
3 Աստուծոյ խօսքը։ Եւ կու գային իրեն՝ չորս մարդով
4 վերցուած անդամալոյծ մը կը բերէին։ Ու երբ բազ-

մութենէն չէին կրնար անոր մօտենալ, քակեցին
տանը յարկը ուր Յիսուս էր, ու ծակ մը բանալով՝
վար իջեցուցին մահիճը, որուն վրայ պառկած էր
5 անդամալոյծը։ Եւ Յիսուս անոնց հաւատքը տեսնե-
լով՝ ըսաւ անդամալոյծին, Որդեակ, քու մեղքերդ
6 քեզի ներուած են։ Ու դպիրներէն մէկ քանիները
կային որ հոն նստեր էին, և իրենց սիրտերուն մէջ
7 կը խորհէին՝ ըսելով, Ինչո՞ւ համար ասիկա այսպիսի
հայհոյութիւններ կը խօսի. ո՞վ կրնայ մեղքերու
8 թողութիւն տալ, բայց միայն Աստուած։ Եւ Յի-
սուս իսկոյն իմանալով իր հոգւոյն մէջ՝ որ անոնք
այնպէս կը խորհին իրենց մէջ, ըսաւ անոնց, Այդ
9 ի՞նչ կը խորհիք սիրտերնուդ մէջ։ Ո՞րը աւելի դիւրին
է, անդամալոյծին ըսե՞լ՝ Քու մեղքերդ ներուած են,
10 թէ ըսել՝ Ելիր, մահիճդ առ ու քալէ։ Բայց որպէս
զի գիտնաք թէ Որդին մարդոյ իշխանութիւն ունի
երկրի վրայ մեղքերու թողութիւն տալու (ըսաւ
11 անդամալոյծին,) Քեզի կ'ըսեմ, ելիր, մահիճդ առ
12 ու տունդ գնա։ Ան ալ շուտ մը ելաւ, և իր մահիճը
առնելով՝ ամէնուն առջև դուրս ելաւ, այնպէս որ
ամէնը ապշած մնացին, և փառք տուին Աստուծոյ,
ու ըսին թէ Այսպիսի բան մը ամենեւին տեսած
չէինք։

13 Եւ ելաւ նորէն ծովեզերքը, ու բոլոր ժողովուրդը
14 իրեն կու գային, և կը սորվեցնէր անոնց։ Ու երբ
կ'անցնէր, տեսաւ Ղևի Ալփէոսեանը, որ մաքս ըն-
դունելու տեղը նստեր էր, ու ըսաւ անոր, Եկուր իմ
15 ետեւէս. ան ալ ելաւ անոր ետեւէն գնաց։ Ու եղաւ
որ երբ սեղան նստած էր անոր տանը մէջ, շատ
մաքսաւորներ ու մեղաւորներ ալ սեղան նստած էին

Յիսուսի հետ ու անոր աշակերտներուն հետ. քանզի
16 շատուոր էին, ու անոր ետեւէն կ'երթային։ Եւ
դպիրները ու փարիսեցիները երբ տեսան թէ անիկա
մաքսաւորներուն ու մեղաւորներուն հետ կ'ուտէ
ըսին անոր աշակերտներուն, Ինչո՞ւ համար մաքսա-
ւորներուն ու մեղաւորներուն հետ կ'ուտէ ու կը
17 խմէ։ Եւ Յիսուս երբ լսեց՝ ըսաւ անոնց, Առողջնե-
րուն բժիշկ պէտք չէ, հապա հիւանդներուն. ես
արդարները կանչելու չեկայ, հապա մեղաւորները*։
18 Եւ Յովհաննէսի ու փարիսեցիներուն աշակերտա-
ները ծոմ կը պահէին. և եկան ու ըսին անոր, Ին-
չո՞ւ Յովհաննէսի ու փարիսեցիներուն աշակերտները
ծոմ կը պահեն, ու քու աշակերտներդ ծոմ չեն
19 պահեր։ Եւ Յիսուս ըսաւ անոնց, Միթէ կարելի՞ է
որ հարսնիքին տղաքը, քանի որ փեսան իրենց հետ է,
ծոմ պահեն. որչափ ժամանակ որ փեսան իրենց հետ
20 ունին, կարելի չէ ծոմ պահել։ Բայց օրեր պիտի
գան՝ որ երբ փեսան իրենցմէ վերցուի՝ այն օրը
21 ծոմ պիտի պահեն։ Մէկը կարկտան չձգեր նոր լաթի
կտոր մը հին հանդերձի վրայ. եթէ ոչ՝ այն նորը որ
անոր լրութեանը համար դրուած էր, հինէն կ'առնէ
22 ու պատառուածքը աւելի գէշ կ'ըլլայ։ Ոչ ալ
մէկը նոր գինին հին տիկերու մէջ կը դնէ. եթէ ոչ՝
նոր գինին տիկերը կը պատռէ, ու գինին կը թափի
և տիկերը կը կորսուին. հապա նոր գինին նոր տիկե-
րու մէջ դնելու է։
23 Ու եղաւ որ շաբաթ օրը ինք արտերուն մէջէն
կ'անցնէր, և իր աշակերտները երբ կ'երթային,

---

*Ոմանք կ'աւելցնեն, ապաշխարութեան

24 սկսան ցորենի հասկեր փրցնել։ Ու փարիսեցիները
ըսին իրեն, Նայէ շաբաթ օրը ինչ կ'ընեն, որ օր-
25 ժան չէ։ Ինք ալ անոնց ըսաւ, Բնաւ չէ՞ք կարդացեր
դուք Դաւիթին ըրածը՝ երբ պէտք ունեցաւ, և անօ-
26 թեցաւ ինք ու անոնք որ իրեն հետ էին։ Ինչպէս
մտաւ Աստուծոյ տունը Աբիաթար քահանայապե-
տին օրով, և առաջաւորութեան հացերը կերաւ,
ու տուաւ անոնց ալ որ իրեն հետ էին, զոր [illegible]
օրինաւոր չէ ուտել, բայց միայն քահանաներուն։
27 Եւ ըսաւ անոնց, Շաբաթը մարդուն համար եղաւ,
28 ու ոչ թէ մարդը շաբաթին համար։ Ուրեմն Որդին
մարդոյ շաբաթին ալ տէրն է։

## ԳԼ. Գ

1 Եւ նորէն ժողովարանը մտաւ, ու հոն մարդ մը
2 կար՝ որուն ձեռքը չորցած էր։ Եւ իրեն կը սպասէին
թէ արդեօք շաբաթ օրը զանիկա պիտի բժշկէ՝, որ-
3 պէս զի իր վրայով ամբաստանութիւն ընեն։ Եւ ինք
ձեռքը չորցած մարդուն ըսաւ, Ելիր մէջտեղը կայնէ։
4 Ու ըսաւ անոնց, Շաբաթ օրը բարի՞ք ընել արժան է՝
թէ չարիք ընել, հոգի մը ազատե՞լ՝ թէ մեռցնել.
5 բայց անոնք լուռ կեցան։ Եւ Յիսուս բարկութեամբ
շուրջանակի անոնց վրայ նայելով՝ անոնց սրտերուն
կուրութեանը համար տրտմած, ըսաւ այն մարդուն,
Ձեռքդ երկնցուր. ան ալ երկնցուց, և անոր ձեռքը
6 *ողջացաւ։ Ու փարիսեցիները Հերովդէսեաններուն
հետ մէկտեղ շուտ մը դուրս ելլելով, անոր դէմ

*Ոմանք, ողջացաւ միւսին պէս

խորհուրդ կ'ընէին թէ ինչպէս զանիկա կորսնցնեն։
7 Բայց Յիսուս իր աշակերտներովը ծովեզերքը գնաց.
և շատ բազմութիւն անոր ետևէն գացին Գալիլ-
8 եայէ ու Հրէաստանէ, Եւ Երուսաղէմէ ու Եդովմէ
և Յորդանանու անդիի կողմէն. ու անոնք որ Տիւրոսի
ու Սիդոնի շրջակայ տեղերէն էին, շատ բազմու-
9 թիւն, երբ լսեցին ինչ որ կ'ընէր, իրեն եկան։ Եւ իր
աշակերտներուն ըսաւ որ նաւակ մը պատրաստ կե-
նայ իրեն համար՝ ժողովուրդին բազմութեանը պատ-
10 ճառաւ, որպէս զի զինք չնեղեն։ Քանզի շատերը
բժշկեց, այնպէս որ ցաւ ունեցողները վրան կը դիզ-
11 ուէին որպէս զի իրեն դպչին։ Եւ պիղծ ոգիները երբ
զինք կը տեսնէին, կ'իյնային իր առջև, կը կանչ-
12 ուըտէին ու կ'ըսէին, Դուն ես Աստուծոյ Որդին.
և խիստ սաստիկ կը յանդիմանէր զանոնք, որ զինք
չյայտնեն։
13 Եւ լեռը ելլելով՝ իր ուզածները իրեն կանչեց, ու
14 գացին անոր քով։ Եւ տասներկու հոգի որոշեց,
որպէս զի իրեն հետ ըլլան, և որպէս զի զանոնք ղրկէ
15 քարոզել, Ու իշխանութիւն ունենալ ցաւերը բժշ-
16 կելու և դևերը հանելու։ Եւ Սիմոնի անունը Պետ-
17 րոս դրաւ. Եւ Զեբեդեան Յակոբոսի ու Յակոբոսի
եղբօրը Յովհաննէսի՝ անոնց անունները Բանէրեգէս
18 դրաւ, որ ըսել է Որդիք որոտման. Եւ Անդրէասը,
ու Փիլիպպոսը, և Բարթողոմէոսը, ու Մատթէոսը,
և Թովմասը, ու Ալփէոսեան Յակոբոսը, և Թադէոսը,
19 ու Սիմոն Կանանացին, Եւ Յուդա Իսկարիովտացին,
որ նաև մատնեց զանիկա։
20 Տուն մը եկան, և նորէն ժողովուրդը ժողվուեցաւ,
այնպէս որ հաց ուտելու ալ ժամանակ չկրցան գտնել։

21 Ու երբ իրենները լսեցին, ելան որ զինք բռնեն,
22 քանզի կ՚ըսէին թէ Խելըուած է։ Եւ այն դպիրները
որոնք Երուսաղէմէ իջեր էին, կ՚ըսէին թէ Անոր
ներսիդին Բէեղզեբուղ կայ, և դեւերուն իշխանովը
23 դեւերը կը հանէ։ Եւ իրեն կանչելով զանոնք՝
առակներով կ՚ըսէր անոնց, Ի՞նչպէս կրնայ Սատա-
24 նայ Սատանայ հանել։ Ու եթէ թագաւորութիւն
մը իրեն դէմ բաժնուի, այն թագաւորութիւնը
25 չկրնար կենալ։ Եւ եթէ տուն մը իրեն դէմ բաժ-
26 նուի, այն տունը չկրնար կենալ։ Ու եթէ Սատա-
նայ իրեն դէմ ելաւ ու բաժնուած է, անիկա չկրնար
27 կենալ, հապա անոր վերջը հասած է։ Մէկը չկրնար
զօրաւոր մարդու մը տունը մտնելով անոր կարա-
սիները յափշտակել, եթէ առաջ այն զօրաւոր
մարդը չկապէ, ու ետքը անոր տունը կողոպտէ։
28 Ճշմարիտ կ՚ըսեմ ձեզի որ Ամէն մեղքերը պիտի ներ-
ուին մարդոց որդիներուն, և հայհոյութիւնները՝
29 որչափ որ հայհոյեն. Բայց ով որ Հոգւոյն Սրբոյ
դէմ հայհոյէ, յաւիտեան թողութիւն պիտի չու-
նենայ, հապա յաւիտենական դատաստանի պար-
30 տաւոր պիտի ըլլայ։ Վասն զի կ՚ըսէին թէ Պիղծ
ոգի կայ անոր ներսիդին։
31 Ետքը անոր մայրը ու եղբայրները եկան, ու դուրսը
կայնելով՝ մարդ ղրկեցին ու կը կանչէին զանիկա։
32 Եւ ժողովուրդը անոր բոլորտիքը նստեր էր, ու իրեն
ըսին թէ Ահա քու մայրդ ու եղբայրներդ դուրսը
33 կայներ են ու քեզ կ՚ուզեն։ Եւ անիկա պատասխան
տուաւ անոնց ու ըսաւ, Ո՞վ է իմ մայրս կամ եղբայր-
34 ներս։ Ու իր բոլորտիքը նստողներուն նայելով՝ ըսաւ,
35 Ահա իմ մայրս ու իմ եղբայրներս. Վասն զի ով որ Աս-

տուծոյ կամքը կը կատարէ, անիկա է իմ եղբայրս
և քոյրս ու մայրս։

## ԳԼ. Դ

1 Դարձեալ սկսաւ սորվեցնել ծովեզերքին վրայ, և
շատ ժողովուրդ անոր քով ժողվուեցաւ, այնպէս որ
ինք նաւը մտաւ ու նստաւ ծովուն վրայ, և բոլոր
2 ժողովուրդը ցամաքը ծովուն եզերքն էր։ Եւ անոնց
շատ բաներ կը սորվեցնէր առակներով, ու կ'ըսէր
3 անոնց իր վարդապետութեանը մէջ, Լսեցէք. ահա
4 սերմ ցանողը ելաւ որպէս զի սերմ ցանէ։ Ու երբ կը
ցանէր, մէկ քանին ճամբուն քով ինկաւ, և *թըռ-
5 չունները եկան ու կերան զանիկա։ Եւ ուրիշը ինկաւ
ապառաժուտ տեղի վրայ, ուր շատ հող չկար. և
շուտ մը բուսաւ՝ հողին խորունկութիւն չունենա-
6 լուն համար. Սակայն արեւուն ծագած ատենը այ-
րեցաւ, ու արմատ չունենալուն համար չորցաւ։
7 Եւ ուրիշը ինկաւ փուշերու մէջ, և փուշերը ելան
8 ու խեղդեցին զանիկա, ու պտուղ չտուաւ։ Եւ ու-
րիշը ինկաւ աղէկ հողի մէջ, ու պտուղ կու տար,
որ ելաւ ու մեծցաւ, և կը բերէր մէկուն տեղ երե-
սուն, ու մէկուն տեղ վաթսուն, և մէկուն տեղ
9 հարիւր։ Ու կ'ըսէր, Ան որ լսելու ականջ ունի,
թող լսէ։
10 Ու երբ առանձին էր, իր քով եղողները տասներ-
կուքին հետ մէկտեղ հարցուցին իրեն այն առակը։
11 Եւ ըսաւ անոնց, Ձեզի տրուած է գիտնալ Աստու-
ծոյ թագաւորութեան խորհուրդը, բայց անոնց որ

---

*Ոմանք, երկինքի թռչունները

12 դուրսէն են, ամէն բան առակներով կ'ըլլայ. Որպէս
զի տեսնելով տեսնեն՝ ու չտեսնեն, և լսելով լսեն՝
ու չիմանան, որպէս զի չըլլայ թէ դարձի գան, և
13 իրենց մեղքերուն թողութիւն ըլլայ։ Ու ըսաւ ա-
նոնց, Այս առակը չէ՞ք գիտեր. ուրեմն ի՞նչպէս պի-
14 տի գիտնաք ամէն առակները։ Սերմ՝ ցանողը խօսքը
15 կը ցանէ։ Եւ ճամբուն քովինները անոնք են, որոնց
մէջ խօսքը կը ցանուի, ու երբ կը լսեն, շուտ մը
Սատանայ կու գայ և անոնց սրտերուն մէջ ցան-
16 ուած խօսքը կը հանէ։ Նոյնպէս ալ ապառաժուտ
տեղերու վրայ ցանուածները անոնք են, որ երբ կը
լսեն խօսքը, շուտ մը ուրախութեամբ կ'ընդունին
17 զանիկա. Եւ իրենց մէջ արմատ չունենալով՝ քիչ
ժամանակ կը տեւեն, ետքը երբ նեղութիւն կամ
հալածանք ըլլայ խօսքին համար, շուտ մը կը գայ-
18 թակղին։ Եւ փուշերուն մէջ ցանուածները անոնք
19 են, որ երբ խօսքը կը լսեն, Աշխարհիս զբաղմունք-
ները ու հարստութեան խաբէութիւնները, և ուրիշ
բաներուն ցանկութիւնները մէջ մտնելով, խօսքը
20 կը խեղդեն, ու կ'ըլլայ անպտուղ։ Եւ աղէկ հողի
մէջ ցանուածները անոնք են, որ խօսքը կը լսեն և
կ'ընդունին, ու պտուղ կու տան՝ մէկուն տեղ երե-
սուն, և մէկուն տեղ վաթսուն, ու մէկուն տեղ
հարիւր։

21 Եւ ըսաւ անոնց, Միթէ ճրագը գրուանին կամ
մահիճին տա՞կ դնելու համար կու գայ, չէ՞ որ
22 աշտանակին վրայ դնելու համար։ Վասն զի ծա-
ծուկ բան մը չկայ, որ պիտի չյայտնուի. և գաղտուկ
23 բան մը չէ եղած, որ երեւան պիտի չելլէ։ Եթէ մէկը
լսելու ականջ ունի, թող լսէ։

24 Ու ըսաւ անոնց, Նայեցէք ի՛նչ կը լսէք. ի՛նչ չա-
փով որ դուք կը չափէք, նոյն չափովը պիտի չափուի
25 ձեզի. և ձեզի, որ կը լսէք, պիտի աւելնայ։ Վասն զի
ո՛վ որ ունի, անոր պիտի տրուի. և ո՛վ որ չունի,
ունեցածն ալ անկէ պիտի առնուի։
26 Ու կ'ըսէր, Աստուծոյ թագաւորութիւնը այսպէս
27 է, որպէս թէ մարդ մը հողին մէջ սերմ ձգէ, Ու
քնանայ և արթննայ գիշեր ու ցորեկ, և սերմը բուս-
28 նի ու մեծնայ, — ինք չգիտեր թէ ի՛նչպէս։ Քանզի
հողը ինքիրմէ պտուղ կու տայ. առաջ խոտը, ետքը
29 հասկը, անկէ ետև լեցուն ցորենը հասկին մէջ։ Ու
երբ պտուղը հասուննայ, շուտ մը մանգաղը կը ղրկէ,
վասն զի հունձքի ատենը հասած է։
30 Ու կ'ըսէր, Աստուծոյ թագաւորութիւնը ի՛նչ
բանի նմանցնենք, կամ ի՛նչ առակով զանիկա
31 բացատրենք։ Մանանեխի հատի նման է, որ հողին
մէջ ցանուած ատենը՝ երկրի վրայ եղած սերմերուն
32 ամէնէն պզտիկն է. Ու երբ ցանուի, կը բուսնի և
ամէն խոտեղէններէն ալ մեծ կ'ըլլայ, ու մեծ ճիւ-
ղեր կ'արձակէ, այնպէս որ երկինքի թռչուններուն
հերիք կ'ըլլայ անոր շուքին տակ բնակելու։
33 Ու այսպէս շատ առակներով կը խօսէր անոնց
34 հետ խօսքը, որչափ որ կրնային մտիկ ընել. Ու ա-
ռանց առակի բան մը չէր խօսեր անոնց, բայց առան-
ձին իր աշակերտներուն կը մեկնէր ամէնը։
35 Ու նոյն օրը երբ իրիկուն կ'ըլլար, ըսաւ անոնց,
36 Եկէք ծովուն անդիի կողմը անցնինք։ Անոնք ալ ժո-
ղովուրդը թող տալով՝ առին զինք ինչպէս էր նա-
ւուն մէջ. և ուրիշ նաւակներ ալ կային անոր հետ։
37 Ու հովի մեծ փոթորիկ մը եղաւ. և ալիքները նա-

ւուն վրայ կու գային, այնպէս որ գրեթէ կը լեցուէր։
38 Ու ինք նաւուն ետեւի կողմը բարձի վրայ կը քնա-
նար. արթնցուցին զանիկա եւ կ'ըսէին անոր, Վար-
39 դապետ, հոգ չէ՞ որ կը կորսուինք։ Ու ելլելով
սաստեց հովին, եւ ծովուն ըսաւ, Դադարէ, լուռ
կեցիր. ու հովը դադարեցաւ, եւ մեծ խաղաղութիւն
40 եղաւ։ Ու ըսաւ անոնց, Ինչո՞ւ այդպէս վախկոտ էք,
41 ի՞նչպէս կ'ըլլայ որ հաւատք չունիք։ Եւ անոնք խիստ
վախցան, ու կ'ըսէին իրարու, Արդեօք ո՞վ է ասիկա,
որ հովը ու ծովը ասոր կը հնազանդին։

## ԳԼ. Ե

1 Եւ եկան ծովուն անդիի կողմը *Գադարացւոց եր-
2 կիրը։ Ու երբ ինք նաւէն ելաւ, գերեզմաններէն
ելած մարդ մը պատահեցաւ իրեն, որ պիղծ ոգի ու-
3 նէր. Որուն բնակած տեղն ալ գերեզմաններուն մէջ
էր, ու շղթայով ալ մէկը չէր կրնար զանիկա կա-
4 պել. Որովհետեւ շատ անգամ ոտնակապերով եւ
շղթաներով կապուեր էր, բայց անիկա շղթաները
կտրեր ու ոտնակապերը կոտրեր էր, եւ մէ՛կը չէր
5 կրնար զանիկա նուաճել. Եւ միշտ գիշեր ու ցորեկ
†գերեզմաններուն մէջ ու լեռներուն մէջ՝ կը կանչ-
ուըռտէր, ու իր մարմինը քարերով կը ճեղքըռտէր։
6 Երբ հեռուանց Յիսուսը տեսաւ, վազեց ու երկրպա-
7 գութիւն ըրաւ անոր. Եւ մեծ ձայնով մը աղաղակեց
ու ըսաւ, Դուն ինծի հետ ի՞նչ բան ունիս, Յիսուս,

---

*Ոմանք, Գերգեսացւոց

†Ոմանք, լեռներուն մէջ ու գերեզմաններուն մէջ

Որդի Աստուծոյ բարձրելոյ, քեզ Աստուծով
8 կ'երդմնցնեմ, զիս մի տանջեր։ (Քանզի կ'ըսէր անոր,
9 Պիղծ ոգի, ելիր այդ մարդէն։) Եւ անոր հարցուց
թէ Անունդ ի՞նչ է. ու ըսաւ անոր, Իմ անունս Լէ-
10 գէոն է, վասն զի մենք շատուոր ենք։ Եւ շատ *կ'ա-
ղաչէին անոր՝ որ զիրենք այն երկրէն դուրս չղրկէ։
11 Եւ հոն լերանը մօտ խոզերու մեծ երամակ մը կար՝
12 որ կ'արածուէին։ Ու բոլոր դեւերը աղաչեցին անոր
ու ըսին, Մեզ խոզերուն ղրկէ, որպէս զի անոնց մէջ
13 մանենք։ Եւ Յիսուս շուտ մը հրաման տուաւ անոնց.
ու երբ պիղծ ոգիները ելան, խոզերուն մէջ մտան,
և երամակը զառիվայրէն ծովը վազեց, (երկու
հազարի չափ կային,) ու ծովուն մէջ խեղդուեցան։
14 Եւ խոզարածները փախան, ու պատմեցին քաղաքը
ու ագարակները. և մարդիկ ելան տեսնելու՝ թէ ինչ
15 բան է որ եղաւ։ Ու եկան Յիսուսի, և տեսան դիւա-
հարը, որ լէգէոն ունէր, որ հագուած ու խելքը
16 վրան եկած նստեր էր, ու վախցան։ Եւ անոնք որ
տեսեր էին, պատմեցին անոնց թէ ինչ եղաւ դիւա-
17 հարին, նաև խոզերուն վրայով։ Եւ սկսան աղաչել
18 անոր, որպէս զի իրենց սահմաններէն երթայ։ Ու երբ
անիկա նաւը մտաւ, դիւահարը կ'աղաչէր անոր՝ որ
19 անոր հետ ըլլայ. Եւ Յիսուս թող չտուաւ անոր,
հապա ըսաւ անոր, Գնա քու տունդ քու ընտանի-
քիդ, ու պատմէ անոնց ինչ որ Տէրը քեզի ըրաւ, և
20 ողորմեցաւ քեզի։ Ան ալ գնաց, և սկսաւ Դեկապո-
լիսի մէջ քարոզել ինչ որ Յիսուս իրեն ըրաւ. և ա-
մէնը կը զարմանային։

---

*Յուն, կ'աղաչէր

21 Ու երբ Յիսուս նաւով նորէն ծովուն անդիի կողմը
անցաւ, շատ բազմութիւն ժողվուեցաւ անոր քով,
22 և ինք ծովեզերքն էր։ Եւ ահա ժողովրդապետներէն
մէկը կու գայ, որուն անունը Յայրոս էր, ու երբ
23 տեսաւ զանիկա, անոր ոտքը ինկաւ. Եւ շատ կ'աղա-
չէր անոր ու կ'ըսէր թէ Իմ աղջիկս մեռնելու մօտ
է, գա՛ անոր վրայ ձեռք դնես, որպէս զի ազատի,
24 ու պիտի ապրի։ Եւ գնաց անոր հետ, ու շատ բազ-
մութիւն իր ետեւէն կ'երթային ու կը նեղէին
զինք։
25 Եւ կին մը, որ տասնըերկու տարի արիւնի տեսա-
26 տեսութեան մէջ էր, Ու շատ նեղութիւն կրած էր
շատ բժիշկներէ, և իր բոլոր ունեցածը վատներ էր,
ու օգուտ մը չէր գտեր, հապա ևս աւելի զայրա-
27 ցեր էր, Երբ Յիսուսի վրայով լսեց, ետեւէն եկաւ
բազմութեան մէջ, ու անոր հանդերձին դպաւ.
28 Քանզի կ'ըսէր, Եթէ միայն անոր հանդերձներուն
29 դպչիմ, պիտի բժշկուիմ։ Եւ շուտ մը իր արիւնին
աղբիւրը ցամքեցաւ, ու իր մարմինին մէջ իմացաւ
30 թէ տանջանքէն բժշկուեցաւ։ Եւ Յիսուս շուտ մը
գիտնալով իր անձին մէջ այն զօրութիւնը որ իրմէ
ելաւ, դարձաւ բազմութեանը մէջ ու ըսաւ, Ո՞վ
31 դպաւ իմ հանդերձներուս։ Եւ իր աշակերտները
ըսին իրեն, Կը տեսնես որ բազմութիւնը քեզ կը
32 նեղէ, ու կ'ըսե՞ս թէ Ո՞վ ինծի դպաւ։ Եւ իր բո-
լորտիքը կը նայէր որպէս զի այս բանը ընողը տեսնէ։
33 Ու կինը վախցաւ ու դողաց, վասն զի գիտէր թէ
իրեն ի՛նչ եղաւ, և եկաւ՝ անոր առջև ինկաւ, ու
34 բոլոր բաները շիտակ շիտակ զրուցեց անոր։ Եւ Յիսուս
ըսաւ անոր, Աղջիկ, քու հաւատքդ քեզ բժշկեց.

գնա խաղաղութեամբ, ու բժշկուած եղիր քու տան-
ջանքէդ:
35 Երբ դեռ ինք կը խօսէր, ժողովրդապետին տունէն
մարդ եկան ու ըսին թէ Աղջիկդ մեռաւ, ալ ինչո՞ւ
36 վարդապետը կը յոգնեցնես: Իսկ Յիսուս ըսուած
խօսքը լսածին պէս ժողովրդապետին ըսաւ, Մի՛ վախ-
37 նար, միայն թէ հաւատա: Եւ մէ՛կը թող չտուաւ
իրեն հետ երթալ, բայց միայն Պետրոսը ու Յակո-
38 բոսը և Յակոբոսին եղբայրը Յովհաննէսը: Ու ժո-
ղովրդապետին տունը գալով՝ տեսաւ աղմուկ և
39 սաստիկ լացողներ ու աղաղակներ: Եւ ներս մտնե-
լով՝ ըսաւ անոնց, Ինչո՞ւ խռովեր էք ու կու լաք.
40 մանուկը մեռած չէ, հապա կը քնանայ: Եւ ծաղր
կ'ընէին զանիկա բայց ինք ամէնը դուրս հանելով՝
իրեն հետ առաւ մանուկին հայրը ու մայրը, և զա-
նոնք որ իրեն հետ էին, ու մտաւ հոն ուր մանուկը
41 պառկած էր: Եւ մանուկին ձեռքէն բռնելով՝ ըսաւ
անոր, Տալիթա, կումի. որ կը թարգմանուի, Աղջիկ,
42 (քեզի կ'ըսեմ,) ելիր: Եւ իսկոյն աղջիկը ոտք ելաւ
ու կը քալէր, վասն զի տասուերկու տարեկան էր
43 ու մեծ ապշութեամբ ապշեցան: Եւ սաստիկ պատ-
ուէր տուաւ անոնց՝ որ մէ՛կը չգիտնայ այս բանը,
ու ըսաւ որ անոր ուտելիք տան:

## ԳԼ. Զ

1 Եւ անկէ ելլելով եկաւ իր երկիրը, ու անոր աշա-
2 կերտները իր ետեւէն գացին: Եւ երբ շաբաթ օրը
հասաւ, սկսաւ ժողովարանին մէջ սորվեցնել. ու
շատերը լսելով կը զարմանային ու կ'ըսէին, Ասիկա

ուրկէ՞ ունի այս բաները, եւ այս ի՞նչ իմաստութիւն
է ատոր տրուած, որ այսպիսի հրաշքներ կ'ըլլան ատոր
3 ձեռքով։ Ասիկա հիւսն չէ՞, Մարիամի որդին, եւ
Յակոբոսի ու Յովսէսի եւ Յուդայի ու Սիմոնի եղ-
բայրը. ու ատոր քոյրերը հոս մեր քով չե՞ն. եւ անոր
4 վրայով կը գայթակղէին։ Բայց Յիսուս ըսաւ անոնց,
Մարգարէ մը անպատիւ չէ՝ բայց միայն իր երկրին
5 մէջ ու իր ազգականներուն եւ իր տանը մէջ։ Ու չէր
կրնար հոն մէ՛կ հրաշք ալ ընել, միայն թէ քանի
մը հիւանդներու վրայ ձեռք դրաւ ու բժշկեց զա-
6 նոնք. Եւ անոնց անհաւատութեանը վրայ կը զար-
մանար. ու շրջակայ գեղերը պտըտելով կը սոր-
վեցնէր։

7 Եւ իրեն կանչեց տասներկուքը, ու սկսաւ երկու
երկու ղրկել զանոնք, ու անոնց իշխանութիւն
8 տուաւ պիղծ ոգիներուն վրայ. Եւ պատուիրեց ա-
նոնց՝ որ ճամբու համար բան մը չառնեն, բայց միայն
գաւազան մը. ոչ պարկ, ոչ հաց, ոչ ստակ՝ գօտի-
9 ներնուն մէջ. Հապա հողաթափ հագնին. եւ կրկին
10 հանդերձ մի հագնիք՝ ըսաւ։ Ու ըսաւ անոնց, Ո՛ր
11 տուն որ մտնէք, հոն կեցէք մինչեւ անկէ ելլէք։ Եւ
անոնք որ ձեզ չեն ընդունիր, ու ձեզի մտիկ չեն
ըներ, երբ անկէ կ'ելլէք, ոտքերնուդ տակի փոշին
թօթուեցէք՝ անոնց վկայութիւն ըլլալու համար։
*Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, Սոդոմացւոց ու Գոմորաց-
ւոց աւելի դիւրին պիտի ըլլայ դատաստանին օրը՝
քան թէ այն քաղաքին։"

12 Եւ անոնք ելլելով կը քարոզէին որ մարդիկ ապաշ-

*Ոմանք չունին

13 տարբեն։ Եւ շատ դեւեր կը հանէին, ու շատ հիւանդ-
ներ իւղով կ'օծէին ու կը բժշկէին զանոնք։
14 Եւ Հերովդէս թագաւորը լսեց, (քանզի անոր ա-
նունը յայտնի եղաւ,) ու կ'ըսէր թէ Յովհաննէս
մկրտիչը մեռելներէն յարութիւն առեր է, ու անոր
15 համար հրաշքներ կ'ըլլան անով։ Ուրիշները կ'ըսէին
թէ Եղիան է. ուրիշներն ալ կ'ըսէին թէ Մարգարէ
16 մըն է, կամ մարգարէներէն մէկուն պէս։ Բայց երբ
Հերովդէս լսեց, ըսաւ, Անիկա Յովհաննէսն է,
որուն գլուխը ես կտրեցի, մեռելներէն յարութիւն
առեր է։
17 Քանզի Հերովդէս ինք մարդ ղրկեց, Յովհաննէսը
բռնեց, ու կապեց բանտը դրաւ իր եղբօրը Փիլիպպոսի
կնոջ, Հերովդիայի, համար, քանզի իրեն կին առեր
18 էր զանիկա։ Վասն զի Յովհաննէս Հերովդէսի կ'ը-
սէր, Քեզի օրինաւոր չէ քու եղբօրդ կինը ունենալ։
19 Եւ Հերովդիա ոխ ունէր անոր դէմ, ու կ'ուզէր զա-
20 նիկա մեռցնել ու չէր կրնար. Վասն զի Հերովդէս
կը վախնար Յովհաննէսէն, գիտնալով թէ անիկա
արդար և սուրբ մարդ մըն է, և անոր բերանը կը
նայէր, ու անկէ լսելով՝ շատ բաներ կ'ընէր, և քաղց-
21 րութեամբ անոր մտիկ կ'ընէր։ Ու երբ դիպուկ օր
մը եղաւ, որ Հերովդէս իր ծննդեան օրը ընթրիք
կ'ընէր իր մեծամեծներուն և հազարապետներուն ու
22 Գալիլեայի երեւելիներուն, Եւ Հերովդիայի աղջիկը
հանդէսին ներսը մտնելով խաղաց, ու հաճելի եղաւ
Հերովդէսի և իրեն հետ նստողներուն, թագաւորը
ըսաւ աղջկան, Խնդրէ ինձմէ ինչ որ կ'ուզես, ու
23 պիտի տամ քեզի։ Եւ անոր երդում ըրաւ՝ ըսելով,
Ինչ որ դուն ինձմէ խնդրես, պիտի տամ քեզի,

24 մինչև թագաւորութեանս կէսը. Եւ անիկա դուրս
ելլելով իր մօրը ըսաւ, Ի՞նչ ուզեմ. ան ալ ըսաւ,
25 Յովհաննէս մկրտչին գլուխը։ Եւ շուտ մը արտորա-
լով թագաւորին քով մտաւ ու խնդրեց՝ ըսելով,
Կ'ուզեմ որ շուտով սկուտեղի մը վրայ Յովհաննէս
26 մկրտչին գլուխը տաս ինծի։ Եւ թագաւորը խիստ
տրտմեցաւ, բայց երդումներուն համար ու իրեն հետ
նստողներուն համար, չուզեց որ անոր խնդիրքը մեր-
27 ժէ։ Եւ թագաւորը իսկոյն դահիճ ղրկեց, ու հրա-
ման ըրաւ անոր գլուխը բերել. ան ալ գնաց բան-
28 տին մէջ գլխատեց զանիկա, Եւ սկուտեղով մը բե-
րաւ անոր գլուխը ու տուաւ աղջկան. և աղջիկը
29 զանիկա իր մօրը տուաւ։ Եւ անոր աշակերտները
լսելով՝ եկան անոր մարմինը վերցուցին ու գերեզ-
մանի մէջ դրին։
30 Եւ առաքեալները Յիսուսի քով ժողվուեցան, ու
պատմեցին անոր ամէն ինչ որ ըրին և ինչ որ սորվե-
31 ցուցին։ Եւ անիկա ըսաւ անոնց, Եկէք դուք առան-
ձին անապատ տեղ մը, և քիչ մը հանգչեցէք. քան-
զի շատերը կային որ կու գային ու կ'երթային. և
32 հաց ուտելու ալ ժամանակ չէին ունենար։ Եւ նա-
33 ւով անապատ տեղ մը գացին առանձին։ Ու ժողո-
վուրդները տեսան զանոնք որ կ'երթային, և շատերը
զանիկա ճանչցան, ու ոտքով բոլոր քաղաքներէն
հոն կը վազէին, և անոնցմէ առաջ հասնելով՝ անոր
34 քով ժողվուեցան։ Ու Յիսուս երբ դուրս ելաւ, շատ
ժողովուրդ տեսնելով խղճաց անոնց վրայ, վասն զի
հովիւ չունեցող ոչխարներու պէս էին, և սկսաւ
շատ բաներ սորվեցնել անոնց։
35 Ու երբ ժամանակը շատ ուշացաւ, իր աշակերտու-

ները իրեն եկան ու ըսին, Հոս անապատ տեղ մըն է,
36 ու ժամանակը ուշացած է։ Արձակէ ժողովուրդները
որպէս զի երթան բոլորտիքի ագարակները ու գիւղերը
ու իրենց հաց գնեն, վասն զի ուտելու բան մը չու-
37 նին։ Բայց անիկա պատասխան տալով ըսաւ ա-
նոնց, Դուք տուէք ասոնց որ ուտեն։ Եւ ըսին իրեն,
Երթանք երկու հարիւր դահեկանի հաց գնե՞նք և
38 տանք ասոնց որ ուտեն։ Ըսաւ անոնց, Քանի՞ նկա-
նակ ունիք, գացէք նայեցէք. ու երբ գիտցան՝ ըսին,
39 Հինգ, ու երկու ձուկ։ Եւ հրաման ըրաւ անոնց՝ որ
ամէնը կանանչ խոտին վրայ գունդ գունդ նստեցը-
40 նեն։ Եւ դաս դաս նստան, հարիւրական ու յիսու-
41 նական։ Եւ հինգ նկանակը ու երկու ձուկը առաւ
ու դէպ ի երկինք նայելով՝ օրհնեց, և մանրեց նկա-
նակները ու տուաւ իր աշակերտներուն, որպէս զի
անոնց առջև դնեն, ու երկու ձուկը ամէնուն ալ
42 բաժնեց։ Եւ ամէնը կերան ու կշտացան։ (43) Եւ
տասուերկու կողով լեցուն՝ կտորուանքները վերցու-
44 ցին, և ձուկերէն ալ։ Եւ այն հացերէն ուտողները
հինգ հազարի չափ այր մարդիկ էին։
45 Եւ շուտ մը իր աշակերտները ստիպեց որ նաւը
մտնեն, և իրմէ առաջ միւս կողմը Բեթսայիդա անց-
46 նին, մինչև ինք ժողովուրդը արձակէ։ Եւ անոնցմէ
47 զատուելով՝ լեռը ելաւ աղօթք ընելու։ Ու երբ իրի-
կուն եղաւ, նաւը ծովուն մէջտեղն էր, ու ինք մի-
48 նակ ցամաքն էր։ Եւ տեսաւ զանոնք որ կը տագնա-
պէին հովէն թի քաշելու ատեն, վասն զի հովը իրենց
դէմ էր. և գիշերուան չորրորդ պահուն ատենները
ծովուն վրայ քալելով կու գայ անոնց, ու կ'ուզէր
49 անոնցմէ անցնիլ։ Անոնք երբ տեսան որ ծովուն վրայ

կը քալէր, կարծեցին թէ աչքի երեւոյթ բան մըն է,
50 ու կանչուըռտեցին. Քանզի ամէնն ալ զանիկա տե-
սան ու խռովեցան. Եւ ինք շուտ մը խօսեցաւ անոնց
հետ ու ըսաւ անոնց, Քաջ եղէք, ես եմ, մի վախ-
51 նաք։ Ու նաւը ելաւ անոնց քով, ու հովը դադարե-
ցաւ. Եւ անոնք միտքերնուն մէջ չափէ դուրս ապ-
52 շած էին ու կը զարմանային, Վասն զի հացին վրայ
եղած հրաշքը չիմացան, քանզի սրտերնին թմրած էր։
53 Ու միւս կողմը անցնելով՝ Գեննեսարէթի երկիրը
54 հասան ու նաւը տեղաւորեցին։ Ու երբ նաւէն ելան,
55 այն տեղի մարդիկը իսկոյն ճանչցան զանիկա. Եւ աս-
դին անդին վազելով բոլոր շրջակայ տեղերը, սկսան
մահիճներով հիւանդները բերել՝ ուր որ կը լսէին
56 թէ հոն է։ Եւ ուր որ կը մտնէր, գեղերը կամ քա-
ղաքները կամ ագարակները, հրապարակներուն մէջ
կը դնէին հիւանդները, ու կ'աղաչէին իրեն որ գոնէ
իր հանդերձին քղանցքին դպչին. Եւ որոնք որ դպան,
բժշկուեցան ։

## ԳԼ. Է

1 Եւ իր քով ժողվուեցան փարիսեցիները ու դպիր-
2 ներէն ոմանք՝ որ Երուսաղէմէ եկած էին։ Ու երբ
տեսան որ անոր աշակերտներէն ոմանք պիղծ, այս-
ինքն անլուայ, ձեռքերով հաց կ'ուտէին, մեղադրե-
3 ցին. Վասն զի փարիսեցիները ու բոլոր Հրեաները
մինչեւ աղէկ մը ձեռքերնին չլուան՝ հաց չեն ուտեր,
4 քանզի ծերերուն աւանդութիւնը կը բռնեն։ Եւ
շուկայէն եկած ատեննին եթէ չլուացուին՝ չեն ուտեր.
Եւ ուրիշ շատ բաներ կան զորոնք ընդունած են ու

կը բռնեն, այսինքն գաւաթներու և փարչերու ու
պղնձէ ամաններու և անկողիններու լուացմունքներ։
5 Այն ատեն փարիսեցիները ու դպիրները հարցուցին
անոր, Թէ Ինչո՞ւ քու աշակերտներդ ծերերուն ա-
ւանդութեանը պէս չեն երթար, հապա անլուայ
6 ձեռքերով հաց կ'ուտեն։ Ան ալ պատասխան տուաւ
ու ըսաւ անոնց, Աղէկ մարգարէութիւն ըրաւ Եսայի
ձեզի կեղծաւորներուդ համար, ինչպէս գրուած է,
Այս ժողովուրդը [illegible] շրթունքներովը զիս կը պատ-
ուէ, բայց իրենց սիրտը հեռացած զատուած է ինծ-
7 մէ. Ու պարապ տեղ զիս կը պաշտեն, մարդոց պատ-
ուիրած բաները իբրև վարդապետութիւն սորվեցնե-
8 լով։ Վասն զի Աստուծոյ պատուիրանքը թողլով՝
մարդոց աւանդութիւնը կը բռնէք, Ինչպէս՝ փարչե-
րու և գաւաթներու լուացմունքներ, և ասոնց նման
9 շատ ուրիշ բաներ կ'ընէք։ Ու ըսաւ անոնց, Աղէկ
կ'անարգէք Աստուծոյ պատուիրանքը, որպէս զի ձեր
10 աւանդութիւնը պահէք։ Քանզի Մովսէս ըսաւ, Քու
հայրդ ու մայրդ պատուէ. և, Ով որ իր հայրը կամ
11 մայրը անիծէ, մահով թող մեռնի։ Բայց դուք կ'ը-
սէք, Եթէ մէկը իր հօրը կամ մօրը ըսէ, Այն բանը
զոր ինծմէ պիտի շահիս, Աստուծոյ տալու կորբան է,
12 (որ ըսել է ընծայ,) ազատ կ'ըլլայ անիկա. Եւ ա՛լ թող
չէք տար անոր բան մը ընել իր հօրը կամ իր մօրը
13 Ու Աստուծոյ խօսքը կը խափանէք ձեր աւանդու-
թիւնովը զոր կ'աւանդէք. և ասոր նման շատ ուրիշ
բաներ կ'ընէք։

14 Եւ բոլոր ժողովուրդը իրեն կանչելով՝ ըսաւ ա-
15 նոնց, Լսեցէք ինծի ամէնդ ու հասկցէք։ Բան մը
չկայ որ դուրսէն մարդուն ներսը մտնէ, ու կարող

ըլլայ զանիկա պղծել, հապա այն բաները որ անկէ
16 կ'ելլեն, անոնք են որ մարդը կը պղծեն։ Ով որ լսե-
լու ականջ ունի՝ թող լսէ։
17 Ու երբ այն բազմութենէն զատուելով տուն մտաւ,
իր աշակերտները հարցուցին իրեն այն առակին հա-
18 մար։ Ու ըսաւ անոնց, Դո՞ւք ալ այդպէս անմիտ
էք. չէ՞ք հասկնար թէ ամէն ինչ որ դուրսէն մար-
դուն ներսիդին կը մտնէ, չկրնար զանիկա պղծել։
19 Վասն զի ոչ թէ անոր սրտին մէջ կը մտնէ, հապա
փորը, և արտաքնոցը կ'ելլէ, ու բոլոր կերածները
20 կը մաքրէ։ Եւ կ'ըսէր թէ Ինչ որ կ'ելլէ մարդուն
21 ներսէն, անիկա կը պղծէ մարդը։ Վասն զի ներսէն,
մարդոց սրտէն, կ'ելլեն չար խորհուրդներ, շնու-
22 թիւններ, պոռնկութիւններ, սպանութիւններ, Գո-
ղութիւններ, ագահութիւններ, չարութիւններ,
նենգութիւն, գիճութիւն, չար աչք, հայհոյութիւն,
23 ամբարտաւանութիւն, անզգամութիւն։ Այս բո-
լոր չար բաները ներսէն կ'ելլեն, ու կը պղծեն մարդը։
24 Եւ անկէ ելլելով Տիւրոսի ու Սիդոնի սահմանները
գնաց, և տուն մը մտնելով՝ չէր ուզեր որ մէկուն
25 յայտնուի, բայց չկրցաւ ծածկուիլ. Քանզի կին մը,
որուն աղջիկը պիղծ ոգի ունէր [illegible], լսեց
26 անոր վրայով, ու եկաւ, անոր ոտքը ինկաւ։ Եւ այն
կինը *հեթանոս էր, ազգով Փիւնիկ Ասորի, ու կ'ա-
27 ղաչէր անոր՝ որ դեւը իր աղջիկէն հանէ։ Եւ Յիսուս
ըսաւ անոր, Թող առաջ տղաքը կշտանան,
քանզի աղէկ չէ տղոց հացը առնել ու շուներուն
28 ձգել։ Անիկա պատասխան տուաւ ու ըսաւ անոր,

*Յուն. Յոյն

Այո, Տէր, վասն զի շուներն ալ սեղանին տակ
29 տղոցը փշրանքներէն կը կերակրուին։ Եւ ըսաւ ա-
նոր, Այդ խօսքիդ համար գնա, քու աղջիկէդ դեւը
30 ելաւ։ Եւ երբ իր տունը երթալով, գտաւ որ դեւը
ելած՝ ու աղջիկը անկողինին վրայ պառկած էր։
31 Եւ նորէն Տիւրոսի ու Սիդոնի սահմաններէն ելնե-
լով, եկաւ Գալիլեայի ծովեզերքը, Դեկապոլիսի
32 սահմաններուն մէջէն։ Եւ մէկը բերին անոր առջեւ,
խուլ ու դժուարախօս, ու կ'աղաչէին որ անոր վրայ
33 ձեռք դնէ։ Եւ ժողովուրդէն մեկդի առնելով զա-
նիկա, իր մատները անոր ականջներուն մէջ խօթեց
34 ու թքաւ, և անոր լեզուին դպաւ, Ու երկինք նայե-
լով՝ հառաչեց ու ըսաւ անոր, Եփփաթա, (որ ըսել
35 է Բացուէ ) Եւ իսկոյն անոր ականջները բացուե-
ցան, ու անոր լեզուին կապը քակուեցաւ, և շիտակ
36 կը խօսէր։ Ու պատուիրեց անոնց որ մարդո՛ւ չըսեն.
և որչափ ինք կը պատուիրէր անոնց, անոնք ա՛լ ա-
37 ւելի կը քարոզէին, Ու չափէ դուրս կը զարմանային
և կ'ըսէին, Ամէն բաները աղէկ ըրաւ ասիկա, որ
խուլերուն լսել կու տայ և համրերուն խօսիլ։

## ԳԼ. Ը

1 Այն օրերը ժողովուրդը խիստ շատ ըլլալով, և ու-
տելու բան մը չունենալով, Յիսուս իրեն կանչեց իր
2 աշակերտները ու ըսաւ անոնց, Կը խղճամ այս ժո-
ղովուրդին վրայ, վասն զի հիմա երեք օր է որ իմ՝ քովս
3 են, և բան մը չունին ուտելու. Եւ եթէ ասոնք ա-
նօթի ղրկեմ իրենց տուները, ճամբուն մէջ պիտի
մարին, վասն զի ասոնցմէ ոմանք հեռու տեղէ եկած

4 են։ Եւ իր աշակերտները պատասխան տուին իրեն,
Այս անապատին մէջ ուրկէ՞ կրնայ մէկը հացով
5 կշտացնել ասոնք։ Եւ հարցուց անոնց, Քանի՞ նկա-
6 նակ ունիք, ու անոնք ըսին, Եօթը։ Եւ հրաման ըրաւ
ժողովուրդին՝ որ գետնին վրայ նստին, ու առաւ
եօթը նկանակը, գոհացաւ և կտրեց ու տուաւ ա-
շակերտներուն, որպէս զի ժողովուրդին առջեւ դնեն,
7 և դրին։ Ու քանի մը մանր ձուկեր ունէին, և օրհնեց
8 ու ըսաւ որ զանոնք ալ դնեն անոնց առջեւ։ Եւ կե-
րան ու կշտացան, ու աւելցած կտորուանքները վեր-
9 ցուցին եօթը զամբիւղ։ Եւ ուտողները չորս հազարի
10 չափ էին, ու արձակեց զանոնք։ Եւ շուտ մը նաւը
մտնելով աշակերտներուն հետ՝ եկաւ Դաղմանու-
թայի կողմերը։
11 Եւ փարիսեցիները ելլելով սկսան անոր հետ վի-
ճաբանութիւն ընել, և զանիկա փորձելով՝ իրմէ
12 նշան մը կ'ուզէին երկինքէն։ Եւ անիկա իր հոգիին
մէջ հառաչելով՝ ըսաւ, Ի՞նչ է որ այս ազգը նշան
կ'ուզէ. ճշմարիտ կ'ըսեմ ձեզի որ այս ազգին նշան
13 պիտի չտրուի։ Ու զանոնք թող տալով նորէն նաւը
մտաւ, ու գնաց ծովուն միւս կողմը։
14 Եւ հաց առնելու մոռցեր էին, ու նաւուն մէջ
15 իրենց հետ միայն մէկ նկանակ ունէին։ Եւ կը պատ-
ուիրէր անոնց ու կ'ըսէր, Նայեցէք և զգուշացէք
16 փարիսեցիներուն խմորէն ու Հերովդէսի խմորէն։ Եւ
իրարու հետ կը խորհէին ու կ'ըսէին թէ Հաց չունե-
17 նալնուս համար է։ Իսկ Յիսուս անոնց խորհուրդը
գիտնալով՝ ըսաւ անոնց, Ինչո՞ւ կը խորհիք թէ հաց
չունիք. տակաւին չե՞ք հասկնար ու չե՞ք իմանար.
18 դեռ սրտերնիդ թմրա՞ծ է։ Աչքեր ունիք ու չե՞ք

տեսներ, և ականջներ ունիք ու չե՞ք լսեր, և չե՞ք
19 յիշեր։ Երբ հինգ նկանակը հինգ հազարին կտրեցի,
քանի՞ կողով լեցուն կտորուանք վերցուցիք. ըսին
20 անոր, Տասուերկու։ Ու երբ եօթը նկանակը չորս հա-
զարին կտրեցի, քանի՞ զամբիւղ լեցուն կտորուանք
21 վերցուցիք. անոնք ալ ըսին, Եօթը։ Ու ըսաւ անոնց,
Հապա ի՞նչպէս չէք հասկնար։
22 Եւ Բեթսայիդա եկաւ, ու անոր առջև կոյր մը
23 բերին, ու կ'աղաչէին իրեն որ դպչի անոր. Եւ անի-
կա կոյրին ձեռքէն բռնելով գեղէն դուրս հանեց,
ու անոր աչքերուն թքնելով՝ ձեռքը անոր վրայ
դրաւ, ու կը հարցնէր անոր թէ բան մը կը տեսնէ՞։
24 Ան ալ նայեցաւ ու կ'ըսէր, Մարդիկ կը տեսնեմ
25 ծառերու պէս որ կը պտըտին։ Նորէն ձեռքը անոր
աչքերուն վրայ դրաւ, ու անոր նայիլ տուաւ. և
26 ողջացաւ ու ամէն բան համարձակ կը տեսնէր։ Ետքը
զանիկա իր տունը ղրկելով՝ ըսաւ, Գեղը մի մտներ
ու գեղին մէջ մարդո՛ւ մի ըսեր։
27 Եւ Յիսուս իր աշակերտներուն հետ մէկտեղ Փի-
լիպպոսի Կեսարիային գեղերը ելաւ, ու ճամբուն
մէջ կը հարցնէր իր աշակերտներուն ու կ'ըսէր ա-
նոնց, Ինծի համար ո՞վ կ'ըսեն մարդիկ թէ եմ։
28 Եւ անոնք պատասխան տուին ու ըսին, Ոմանք՝ Յով-
հաննէս մկրտիչը, և ուրիշները՝ Եղիան, ուրիշներն
29 ալ՝ Մարգարէներէն մէկը։ Եւ ինք ըսաւ անոնց,
Հապա դուք ինծի համար ո՞վ կ'ըսէք թէ եմ. պա-
տասխան տուաւ Պետրոս ու ըսաւ անոր, Դուն ես
30 Քրիստոսը։ Եւ սաստիկ պատուիրեց անոնց՝ որ իրեն
համար մարդո՛ւ չզրուցեն։
31 Ու սկսաւ սորվեցնել անոնց, թէ Պէտք է որ Որդին

մարդս շատ չարչարանքներ կրէ, ու երէցներէն և
քահանայապետներէն ու դպիրներէն մերժուի, ու
սպաննուի, և երեք օրէն ետև յարութիւն առնէ։
32 Ու այս խօսքը յայտնի խօսեցաւ. և Պետրոս մէկդի
առաւ զանիկա, ու սկսաւ յանդիմանել զանիկա։
33 Եւ ինք դարձաւ ու իր աշակերտներուն նայելով՝
յանդիմանեց Պետրոսը ու ըսաւ, Ետին գնա, Սատա-
նայ, վասն զի դուն Աստուծոյ բաները չես մտածեր,
հապա մարդոց բաները։
34 Եւ ժողովուրդը իր աշակերտներուն հետ մէկտեղ
իրեն կանչելով՝ ըսաւ անոնց, Ով որ կ'ուզէ իմ ե-
տևէս գալ, թող իր անձը ուրանայ, և իր խաչը
35 վերցնէ, ու իմ ետևէս գայ։ Վասն զի ով որ կ'ուզէ
իր անձը ազատել, պիտի կորսնցնէ զանիկա. և ով որ
ինծի ու աւետարանին համար իր անձը կը կորսնցնէ,
36 պիտի ազատէ զանիկա։ Քանզի ի՞նչ օգուտ է մար-
դուն՝ որ բոլոր աշխարհը վաստկի, և իր անձը կոր-
37 սնցնէ. Կամ իր անձին համար ի՞նչ ազատչէք պի-
38 տի տայ մարդ։ Վասն զի ով որ զիս ու իմ խօսքե-
րըս ք———նէը ամօթ սեպէ այս շնացող ու մեղաւոր
ազգին մէջ, Որդին մարդոյ ալ զանիկա ք———նէը
ամօթ պիտի սեպէ՝ երբ գայ իր Հօրը փառքովը սուրբ
39 հրեշտակներուն հետ։ Եւ ըսաւ անոնց, Ճշմարիտ
կ'ըսեմ ձեզի, որ հոս ներկայ եղողներէն մէկ քանի-
ները կան՝ որոնք մահուան համը պիտի չառնեն, մին-
չև տեսնեն Աստուծոյ թագաւորութիւնը զօրու-
թիւնով եկած։

## ԳԼ. Թ

1 Եւ վեց օրէն ետև Յիսուս իրեն հետ առաւ Պետ-
րոսը ու Յակոբոսը և Յովհաննէսը, ու զանոնք բարձր
լեռ մը հանեց առանձին, և անոնց առջև այլակեր-
2 պեցաւ։ Ու իր հանդերձները եղան փայլուն խիստ
ճերմակ, այնպէս որ երկրի վրայ թափիչ մը չկրնար
3 այնպէս ճերմկցնել։ Ու Եղիա Մովսէսի հետ երև-
4 ցաւ անոնց, և Յիսուսի հետ կը խօսէին։ Եւ Պետրոս
պատասխան տուաւ ու ըսաւ Յիսուսի, Ռաբբի, ա-
ղէկ է որ հոս կենանք. ու երեք խրճիթ շինենք, մէկը
5 քեզի, և մէկը Մովսէսի, ու մէկը Եղիայի. Վասն զի
չէր գիտեր թէ ինչ կը խօսի, քանզի զարհուրեր էին։
6 Եւ ամպ մը հովանի եղաւ անոնց վրայ, ու ձայն մը
եկաւ ամպէն՝ ըսելով, Ասիկա է իմ սիրելի Որդիս,
7 անոր մտիկ ըրէք։ Եւ յանկարծ՝ երբ ասդին անդին
նայեցան, ալ ուրիշ մէկը չտեսան, հապա միայն
8 Յիսուսը իրենց հետ։ Ու երբ լեռնէն վար կ'իջնէին,
պատուիրեց անոնց որ տեսածնին մարդո՛ւ չպատմեն,
բայց միայն Որդւոյն մարդոյ մեռելներէն յարու-
9 թիւն առնելէն ետև։ Եւ անոնք այն խօսքը պահե-
ցին. ու իրենց մէջ հարցափորձ կ'ընէին թէ մեռել-
10 ներէն յարութիւն առնելը ինչ է։ Եւ իրեն հար-
ցուցին ու ըսին, Ան ինչ է որ դպիրները կ'ըսեն թէ
11 Պէտք է որ առաջ Եղիա գայ։ Անիկա պատասխան
տուաւ ու ըսաւ անոնց, Յիրաւի առաջ Եղիա կու
գայ, և ամէն բան կարգի կը դնէ. և թէ ինչպէս
գրուած է Որդւոյ մարդոյ համար, որ շատ չարչա-
12 րանքներ պիտի կրէ ու անարգուի. Բայց ձեզի կ'ըսեմ

որ Եղիա եկաւ ալ, և ինչ որ ուզեցին՝ ըրին անոր,
ինչպէս գրուած է անոր համար։
13 Ու աշակերտներուն քով գալով՝ տեսաւ շատ ժո-
ղովուրդ անոնց բոլորտիքը, և դպիրները որ վիճա-
14 բանութիւն կ'ընէին անոնց հետ։ Եւ շուտ մը բոլոր
ժողովուրդը երբ տեսան զանիկա, խիստ զարմացան,
15 ու առաջ վազելով բարեւ կու տային անոր։ Եւ
հարցուց դպիրներուն թէ Ինչ վիճաբանութիւն կ'ը-
16 նէք անոնց հետ։ Ու ժողովուրդէն մէկը պատասխան
տալով՝ ըսաւ, Վարդապետ իմ որդիս քեզի բերի,
17 որ համր ոգի ունի. Եւ ուր որ անոր հասնի, զանիկա
գետինը կը զարնէ, ան ալ կը փրփրի և իր ակռա-
ները կը կրճտէ ու կը ցամքի. և քու աշակերտնե-
18 րուդ ըսի որ զանիկա հանեն ու չկրցան։ Պատասխան
տուաւ անոնց ու ըսաւ, Ով անհաւատ ազգ, մինչև
ե՞րբ ձեզի հետ պիտի ըլլամ, մինչև ե՞րբ ձեզի պիտի
19 համբերեմ. ինծի բերէք զանիկա։ Եւ զանիկա բերին
իրեն. երբ տղան տեսաւ զանիկա, շուտ մը չար ոգին
ցնցեց զանիկա, ու գետինը ինկած կը թաւալէր ու
20 կը փրփրէր։ Եւ Յիսուս հարցուց անոր հօրը ու ըսաւ,
Ո՞րչափ ատեն է որ այդ բանը անոր եղաւ. ու անիկա
21 ըսաւ, Տղայութենէն ի վեր. Եւ շատ անգամ կրակի
ու ջուրի մէջ կը նետէ զանիկա՝ որպէս զի կորսնցնէ.
բայց եթէ կարողութիւն մը ունիս, օգնէ մեզի, խղճ-
22 ալով մեր վրայ։ Եւ Յիսուս ըսաւ անոր, Եթէ կա-
րող ես հաւատալու, ամէն բան կարելի է անոր որ
23 կը հաւատայ։ Եւ տղուն հայրը շուտ մը աղաղակեց
ու արցունքով ըսաւ, Կը հաւատամ, Տէր, օգնէ իմ
24 անհաւատութեանս։ Յիսուս երբ տեսաւ որ ժողո-
վուրդը վրան կը դիզուի, սաստեց պիղծ ոգիին ու-

ըսաւ անոր, Համր ու խուլ ոգի, կը հրամայեմ քեզի,
25 ելիր անկէ, ու ալ մէյ մըն ալ չմտնես անոր ներսը։ Եւ
կանչուըռտելով՝ սաստիկ ցնցեց զանիկա ու ելաւ.
և տղան մեռելի պէս եղաւ, այնպէս որ շատերը ըսին
26 թէ Մեռաւ։ Եւ Յիսուս անոր ձեռքէն բռնելով վեր-
27 ցուց զանիկա. ան ալ կայնեցաւ։ Ու երբ ինք տուն
մտաւ, իր աշակերտները առանձին հարցուցին իրեն՝
28 ըսելով, Մենք ինչո՞ւ չկրցանք հանել զանիկա։ Եւ
ըսաւ անոնց, Այդ տեսակին կարելի չէ ուրիշ բանով
մը ելլել, բայց միայն աղօթքով ու ծոմապահու-
թեամբ։
29 Եւ անկէ ելլելով Գալիլեայի մէջէն կ'անցնէին,
30 ու չէր ուզեր որ մէկը գիտնայ։ Վասն զի կը սորվեցը-
նէր իր աշակերտներուն ու կ'ըսէր անոնց թէ Որդին
մարդոյ պիտի մատնուի մարդոց ձեռքը, և զանիկա
պիտի սպաննեն. ու երբ սպաննուի՝ երրորդ օրը յա-
31 րութիւն պիտի առնէ։ Եւ անոնք չէին հասկնար այն
խօսքը, ու կը վախնային իրեն հարցնելու։
32 Եւ եկաւ Կափառնայում, ու երբ տուն մտաւ՝
հարցուց անոնց, Ի՞նչ վիճաբանութիւն կ'ընէիք
33 ճամբան իրարու հետ։ Եւ անոնք լուռ կեցան, վասն
զի ճամբուն մէջ իրարու հետ վիճաբանութիւն կ'ը-
34 նէին թէ ո՛վ մեծ է։ Ու երբ նստաւ, կանչեց տաս-
ներկուքը ու ըսաւ անոնց, Եթէ մէկը կ'ուզէ առա-
ջին ըլլալ, ամէնուն յետինը պիտի ըլլայ և ամէնուն
35 սպասաւորը։ Ու տղայ մը առաւ կայնեցուց անոնց
մէջ, և իր գիրկը առնելով զանիկա՝ ըսաւ անոնց,
36 Ով որ այսպիսի տղոցմէն մէկը ընդունի իմ անու-
նովս զիս կ'ընդունի. և ով որ զիս ընդունի, ոչ թէ
37 զիս կ'ընդունի, հապա զիս ղրկողը։ Պատասխան տուաւ

անոր Յովհաննէս ու ըսաւ, Վարդապետ, մէկը տե-
սանք որ քու անունովդ դեւեր կը հանէր, ու մեր
ետեւէն չպտըտիր, և զանիկա արգիլեցինք՝ մեր ե-
38 տեւէն չպտըտելուն համար։ Եւ Յիսուս ըսաւ, Մի
արգիլէք զանիկա, վասն զի մէկը չկայ որ իմ անու-
նովս հրաշք գործէ, ու կարենայ շուտ մը զիս հայ-
39 հոյել։ Քանզի ան որ *մեզի հակառակ չէ, մեր կող-
40 մէն է։ Վասն զի ով որ ձեզի գաւաթ մը ջուր խըմ-
ցընէ †իմ անունովս թէ դուք Քրիստոսին էք, ճըշ-
մարիտ կ'ըսեմ ձեզի, Անիկա իր վարձքը պիտի չկոր-
41 սնցնէ։ Եւ ով որ գայթակղեցնէ այս պզտիկներէն
մէկը որ ինծի կը հաւատան, աւելի աղէկ էր անոր՝
որ աղացքի քար մը իր վիզէն կախուէր, ու ծովը
42 ձգուէր։ Եւ եթէ քու ձեռքդ քեզ կը գայթակղեցը-
նէ, կտրէ զանիկա. աղէկ է քեզի պակասաւոր մըտ-
նել կեանքը, քան թէ երկու ձեռք ունենալ ու գեհ-
43 եանը երթալ չմարելու կրակին մէջ, Ուր անոնց որ-
44 դը չմեռնիր ու կրակը չմարիր։ Եւ եթէ քու ոտքդ
քեզ կը գայթակղեցնէ, կտրէ զանիկա. աղէկ է
քեզի կաղ մտնել կեանքը, քան թէ երկու ոտք ու-
նենալ ու գեհեանը ձգուիլ չմարելու կրակին մէջ,
45 Ուր անոնց որդը չմեռնիր ու կրակը չմարիր։ (46) Եւ
եթէ քու աչքդ քեզ կը գայթակղեցնէ, հանէ զա-
նիկա. աղէկ է քեզի մէկ աչքով Աստուծոյ թագա-
ւորութիւնը մտնել, քան թէ երկու աչք ունենալ
47 ու կրակին գեհեանը ձգուիլ, Ուր անոնց որդը չմեռ-
48 նիր ու կրակը չմարիր։ Վասն զի ամէն մարդ կրակով

---

*Ոմանք, ձեզի հակառակ չէ, ձեր
†Ոմանք, այս անունով

49 պիտի աղուի, և ամէն զոհ աղով պիտի աղուի։ Աղը
աղէկ է, բայց եթէ աղը անհամնայ, ինչո՞վ պիտի
համեմցնէք. ձեր անձին մէջ աղ ունեցէք, և իրարու
հետ խաղաղութիւն ըրէք։

## ԳԼ. Ժ

1 Ու անկէ ելլելով՝ Հրէաստանի սահմանները եկաւ
Յորդանանու անդիի կողմէն, ու նորէն ժողովուրդ-
ները անոր քով կը ժողվուէին. և ինչպէս սովորու-
թիւն ունէր, դարձեալ կը սորվեցնէր անոնց։
2 Ու փարիսեցիները քովը եկան, և զանիկա փորձե-
լով՝ կը հարցնէին անոր թէ Արժա՞ն է որ այրը իր
3 կինը արձակէ։ Եւ անիկա պատասխան տալով ա-
4 նոնց ըսաւ, Մովսէս ձեզի ի՞նչ պատուիրեց։ Եւ ա-
նոնք ըսին, Մովսէս հրաման տուաւ արձակման գիր
5 գրել ու արձակել։ Եւ Յիսուս պատասխան տալով՝
անոնց ըսաւ, Ձեր սրտին կարծրութեանը համար գը-
6 րեց ձեզի այդ պատուէրը. Բայց սկզբնագործութեան
սկիզբէն Աստուած զանոնք արու և էգ ըրաւ, ու
7 ըսաւ, Ասոր համար մարդ իր հայրը ու մայրը պիտի
8 ձգէ և իր կնոջ պիտի յարի, Ու երկուքը մէկ մար-
մին պիտի ըլլան. ուստի ա՛լ երկու չեն, հապա մէկ
9 մարմին. Ուրեմն զայն որ Աստուած միաւորեց, մարդ
10 թող չզատէ։ Եւ տունը իր աշակերտները նորէն նոյն
11 բանը հարցուցին իրեն։ Ու ըսաւ անոնց, Ով որ իր
կինը արձակէ և ուրիշ մը առնէ, անոր դէմ շնու-
12 թիւն կ՚ընէ։ Ու կին մը եթէ իր էրիկէն զատուի և
ուրիշ էրկան մը ըլլայ, շնութիւն կ՚ընէ։
13 Եւ մանր տղաք բերին իրեն, որպէս զի անոնց դըպ-

չի, բայց աշակերտները կը յանդիմանէին բերող-
14 ները։ Յիսուս երբ տեսաւ, սրդողելով անոնց ըսաւ,
Թող տուէք այդ մանր տղաքը որ ինծի գան, և մի
արգիլէք զանոնք, վասն զի Աստուծոյ թագաւորու-
15 թիւնը այդպիսիներուն է։ Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի,
Ով որ Աստուծոյ թագաւորութիւնը պզտիկ տղու
16 մը պէս չընդունի, բնաւ պիտի չմտնէ անոր մէջ։ Եւ
զանոնք գիրկը առաւ, անոնց վրայ ձեռք դրաւ ու
օրհնեց զանոնք։
17 Ու երբ անիկա դուրս ելաւ ճամբուն մէջ, ահա
մարդ մը վազեց, ու անոր առջև ծունկ դնելով կը
հարցնէր անոր — Կ'ըսէր, Բարի վարդապետ, ինչ
18 ընեմ որ յաւիտենական կեանքը ժառանգեմ։ Եւ
Յիսուս ըսաւ անոր, Ինչո՞ւ զիս բարի կ'անուանես.
19 մէկէն զատ բարի չկայ, որ է Աստուած։ Պատուի-
րանքները գիտես. Շնութիւն մի ըներ, Սպանութիւն
մի ըներ, Գողութիւն մի ըներ, Սուտ վկայութիւն մի
ըներ, Զրկանք մի ըներ, Քու հայրդ ու մայրդ պատ-
20 ուէ։ Անիկա պատասխան տուաւ ու ըսաւ անոր,
Վարդապետ ատոնք ամէնը մանկութենէս ի վեր պա-
21 հեր եմ։ Եւ Յիսուս անոր նայելով՝ սիրեց զանիկա,
ու ըսաւ անոր, Մէկ բան պակաս է քեզի. գնա ու-
նեցածդ ծախէ և տուր աղքատներուն, ու երկինքը
գանձ պիտի ունենաս, և խաչը վերցուր ու եկուր իմ
22 ետևէս։ Եւ անիկա այս խօսքին համար խռովելով՝
տրտմած գնաց, վասն զի շատ ստացուածք ունէր։
23 Եւ Յիսուս իր բոլորտիքը նայելով՝ ըսաւ իր աշա-
կերտներուն, Որչափ դժուար է անոնց որ հարստու-
թիւն ունին Աստուծոյ թագաւորութիւնը մտնել։
24 Եւ աշակերտները զարմացեր էին անոր խօսքերուն

վրայ. բայց Յիսուս նորէն պատասխան տալով անոնց
ըսաւ, Որդեակներ, ո՜րչափ դժուար է իրենց հարըս-
տութեան յուսացողներուն Աստուծոյ թագաւորու-
25 թիւնը մտնել։ Դիւրին է որ ուղտը ասեղին ծակէն
անցնի, քան թէ հարուստը Աստուծոյ թագաւորու-
26 թիւնը մտնէ։ Եւ անոնք խիստ շատ կը զարմանային
27 ու կ'ըսէին իրարու, Ալ ո՞վ որ կրնայ փրկուիլ։ Եւ
Յիսուս անոնց նայելով՝ ըսաւ, Ասիկա մարդոց կող-
մանէ անկարելի է, բայց ոչ Աստուծոյ կողմանէ.
28 քանզի Աստուծոյ կողմանէ ամէն բան կարելի է։ Պետ-
րոս սկսաւ ըսել անոր, Ահա մենք ամէն բան թողու-
29 ցինք և քու ետեւէդ եկանք։ Եւ Յիսուս պատասխան
տալով՝ ըսաւ, Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, Մէկը չկայ
որ թողուց տուն, կամ եղբայրներ, կամ քոյրեր,
կամ հայր, կամ մայր, կամ կին, կամ որդիներ,
կամ արտեր՝ ինծի համար ու աւետարանին համար,
30 Որ պիտի չառնէ հարիւրապատիկ հիմա այս ատենս
տուներ, ու եղբայրներ, և քոյրեր, ու մայրեր, և որ-
դիներ, ու արտեր հալածանքներու հետ, և գալու
31 աշխարհին մէջ յաւիտենական կեանքը։ Բայց շատ
առաջիններ պիտի ըլլան յետին, ու յետիններ՝ ա-
ռաջին։

32 Եւ անոնք դէպ ի Երուսաղէմ կ'ելլէին — ճամբուն
մէջ էին. և Յիսուս անոնցմէ առաջ կ'երթար, ու
անոնք կը զարմանային, ու ետեւէն երթալով՝ կը
վախնային։ Եւ նորէն քովը առնելով տասներկուքը,
սկսաւ ըսել անոնց ինչ բաներ որ իրեն պիտի պատա-
33 հէին. Ո— ըսաւ —, Ահա Երուսաղէմ կ'ելլենք. և Որդին
մարդոյ պիտի մատնուի քահանայապետներուն ու
դպիրներուն, և զանիկա մահուան պիտի դատապար-

տեն. ու զանիկա հեթանոսներուն պիտի մատնեն.
34 Եւ զանիկա ծաղր պիտի ընեն ու ծեծեն, եւ անոր վը-
րայ պիտի թքնեն, ու զանիկա մեռցնեն, ու երրորդ
օրը յարութիւն պիտի առնէ։
35 Եւ անոր քով գացին Յակոբոս ու Յովհաննէս,
Զեբեդէոսի որդիները, ու ըսին, Վարդապետ, կ'ու-
36 զենք որ քեզմէ ինչ որ խնդրենք՝ մեզի ընես։ Ան ալ
37 ըսաւ անոնց, Ի՞նչ կ'ուզէք որ ձեզի ընեմ։ Ու անոնք
ըսին իրեն, Շնորհէ մեզի որ նստինք մեզմէ մէկը աջ
38 կողմդ եւ միւսը ձախ կողմդ քու փառքիդ մէջ։ Եւ
Յիսուս ըսաւ անոնց։ Դուք գիտեր ինչ կը խնդրէք.
կրնա՞ք խմել այն գաւաթը զոր ես կը խմեմ, եւ այն
39 մկրտութիւնովը մկրտուիլ՝ զոր ես կը մկրտուիմ։ Եւ
անոնք ըսին իրեն, Կրնանք. ու Յիսուս ըսաւ անոնց,
Այն գաւաթը զոր ես կը խմեմ՝ պիտի խմէք, եւ այն
մկրտութիւնովը զոր ես կը մկրտուիմ՝ պիտի մկըր-
40 տուիք. Բայց իմ աջ կողմս ու ձախ կողմս նստիլը
41 իմս չէ տալը, հապա որոնց որ պատրաստուած է։ Ու
երբ միւս տասը աշակերտները լսեցին, սկսան Յակոբոսի
42 ու Յովհաննէսի նեղանալ։ Իսկ Յիսուս իրեն կանչեց
զանոնք ու ըսաւ անոնց, Գիտէք որ ազգերուն իշխան
սեպուածները կը տիրեն անոնց, եւ անոնց մեծամեծ-
43 ները կ'իշխեն անոնց. Բայց ձեր մէջ այնպէս պիտի
չըլլայ, հապա ձեզմէ ով որ մեծ ըլլալ կ'ուզէ, անի-
44 կա ձեր սպասաւորը ըլլայ. Ու ձեզմէ ով որ առաջին
45 ըլլալ կ'ուզէ, անիկա ամէնուն ծառայ ըլլայ։ Քան-
զի Որդին մարդոյ ալ չեկաւ սպասաւորութիւն ըն-
դունելու, հապա սպասաւորութիւն ընելու, եւ իր
կեանքը շատերու համար փրկանք մը տալու։
46 Ու եկան Երիքով. ու երբ Երիքովէ կ'ելլէր աշա-

կերտներովը և շատ բազմութիւնով, Տիմէոսի որդին
կոյր Բարտիմէոս ճամբուն քով նստեր էր մուրալու։
47 Ու երբ լսեց թէ Յիսուս Նազովրեցին է, սկսաւ աղա-
ղակել ու ըսել, Յիսուս, որդի Դաւթի, ողորմէ ին-
48 ծի։ Եւ շատերը կը յանդիմանէին զանիկա որպէս զի
լռէ, բայց անիկա ա՛լ աւելի կ'աղաղակէր. Որդի
49 Դաւթի, ողորմէ ինծի։ Եւ Յիսուս կանգ առնելով՝
ըսաւ որ զանիկա կանչեն. կանչեցին կոյրը ու ըսին
50 անոր, Քաջ եղիր, ելիր, քեզ կը կանչէ։ Եւ անիկա
51 իր հանդերձը ձգելով, ելաւ ու եկաւ Յիսուսի։ Եւ
Յիսուս պատասխան տուաւ ու անոր ըսաւ, Ի՞նչ կ'ու-
զես որ քեզի ընեմ. կոյրը ըսաւ անոր, Ռաբբունի, որ
52 աչքերս բացուին։ Եւ Յիսուս ըսաւ անոր, Գնա. քու
հաւատքդ քեզ բժշկեց. և շուտ մը անոր աչքերը
բացուեցան, ու ճամբան Յիսուսի ետեւէն կ'երթար

## ԳԼ. ԺԱ.

1 Ու երբ Երուսաղէմի մօտեցան, Բեթփագէ ու Բե-
թանիա դէպ ի Ձիթենեաց լեռը, Յիսուս իր աշա-
2 կերտներէն երկուքը ղրկեց, Եւ ըսաւ անոնց, Գացէք
այդ ձեր դիմացի գեղը, և անոր մէջ մանելնուդ պէս՝
պիտի գտնէք կապուած աւանակ մը, որուն վրայ
մարդ մը նստած չէ. արձակեցէք զանիկա ու բերէք.
3 Եւ եթէ մէկը ըսէ ձեզի թէ Այդ ի՞նչ կ'ընէք, ըսէք
թէ Տէրոջը պէտք է. և շուտ մը հոս պիտի ղրկէ
4 զանիկա։ Գացին և գտան աւանակը դուրսը փողոցին
մէջ դրանը քով կապուած, ու արձակեցին զանիկա։
5 Եւ հոն կայնողներէն ոմանք ըսին անոնց, Ի՞նչ կ'ընէք
6 որ կ'արձակէք այդ աւանակը։ Եւ անոնք ըսին անոնց

ինչպէս Յիսուս պատուիրեր էր, ու իրենց թող տուին։
7 Եւ աւանակը Յիսուսի բերին, ու անոր վրայ իրենց
8 հանդերձները դրին, ու նստաւ անոր վրայ։ Եւ շա-
տերը իրենց հանդերձները ճամբուն վրայ փռեցին, և
ուրիշները ծառերէն ճիւղեր կը կտրէին ու ճամբուն
9 վրայ կը տարածէին։ Եւ առջեւէն ու ետեւէն գացող-
ները կ'աղաղակէին ու կ'ըսէին. Ովսաննա. Օրհնեալ
10 է ան որ Տէրոջը անունովը կու գայ. Օրհնեալ է մեր
Դաւիթ հօրը թագաւորութիւնը որ *կու գայ. Ով-
սաննա ի բարձունս։

11 Եւ Յիսուս մտաւ Երուսաղէմ ու տաճարը, և չորս
կողմը ամէն բաները աչքէ անցուց. և արդէն ժա-
մանակը իրիկուն ըլլալով՝ Բեթանիա ելաւ տասներ-
կուքին հետ մէկտեղ։

12 Ու հետեւեալ օրը երբ Բեթանիայէ կ'ելլէին, ա-
13 նօթեցաւ. Եւ հեռուանց տերեւալից թզենի մը տես-
նելով՝ եկաւ որ թերեւս անոր վրայ բան մը գտնէ. ու
երբ անոր քով գնաց, տերեւներէն զատ բան մը
14 չգտաւ, վասն զի դեռ թուզի ատեն չէր. †Եւ պատաս-
խան տուաւ ու ըսաւ անոր, Ասկէ ետեւ մէկը քեզմէ
պտուղ չուտէ յաւիտեան. և իր աշակերտները լսե-
ցին։

15 Ու եկան Երուսաղէմ. և Յիսուս տաճարը մտնելով՝
սկսաւ դուրս հանել զանոնք որ տաճարին մէջ կը
ծախէին ու կը գնէին. և ստակ փոխողներուն սե-
ղանները ու աղաւնի ծախողներուն աթոռները կոր-
16 ծանեց. Եւ թող չէր տար որ մէկը տաճարին մէջէն

---

*Ոմանք, Տէրոջը անունովը կու գայ
†Ոմանք Եւ Յիսուս

17 աման մը անցնի։ Եւ կը սորվեցնէր ու կ'ըսէր անոնց,
Գրուած չէ՞ որ Իմ տունս աղօթքի տուն պիտի կոչ-
ուի բոլոր ազգերուն. բայց դուք աւազակ-
18 ներու այր ըրիք։ Եւ դպիրները ու քահանայապետ-
ները այս լսելով կը փնտռէին թէ ինչպէս կորսնցը-
նեն զանիկա, քանզի անկէ կը վախնային. վասն զի
բոլոր ժողովուրդը զարմացեր էր անոր վարդապետու-
19 թեանը վրայ։ Ու երբ իրիկուն եղաւ, քաղաքէն դուրս
ելաւ։
20 Եւ առտուանց երբ անկէ կ'անցնէին, թզենին տե-
21 սան արմատէն չորցած։ Ու Պետրոսի միտքը եկաւ ու
ըսաւ անոր, Ռաբբի, ահա թզենին զոր անիծեցիր՝
22 չորցեր է։ Եւ Յիսուս պատասխան տալով՝ ըսաւ ա-
23 նոնց, Աստուծոյ հաւատք ունեցէք. Քանզի ճշմարիտ
կ'ըսեմ ձեզի, Ով որ այս լերանը ըսէ, Ելիր ու ծովը
ինկիր, և իր սրտին մէջ չերկմտի, հապա հաւատայ
թէ ինչ որ ըսէ կ'ըլլայ, պիտի ըլլայ անոր ինչ որ
24 ըսէ։ Ասոր համար կ'ըսեմ ձեզի, Ինչ բան որ աղօթ-
քով կը խնդրէք, հաւատացէք թէ պիտի առնէք, և
25 պիտի ըլլայ ձեզի։ Ու երբ աղօթքի կը կենաք, նե-
րեցէք եթէ մէկուն դէմ բան մը ունիք, որպէս զի
ձեր Հայրն ալ որ երկինքն է, ներէ ձեզի ձեր յան-
26 ցանքները։ Իսկ եթէ դուք չէք ներեր, ձեր Հայրն ալ
որ երկինքն է, պիտի չներէ ձեր յանցանքները։
27 Եւ նորէն Երուսաղէմ եկան. ու երբ տաճարին
մէջ կը պտըտէր, քահանայապետները և դպիրները
28 ու ծերերը անոր եկան, Ու ըսին անոր, Ի՞նչ իշխա-
նութիւնով կ'ընես այդ բաները, և ո՞վ տուաւ քեզի
29 այդ իշխանութիւնը, որ այդ բաները ընես։ Պատաս-
խան տուաւ Յիսուս ու ըսաւ անոնց. Ես ալ ձեզի

բան մը հարցնեմ, ու եթէ ինծի պատասխան տաք, ես
ալ ձեզի պիտի ըսեմ թէ ի՛նչ իշխանութիւնով կ'ը-
30 նեմ այս բաները։ Յովհաննէսի մկրտութիւնը երկին-
քէ՞ն էր՝ թէ մարդոցմէ. պատասխան տուէք ինծի
31 Եւ անոնք իրենց մէջ կը խորհէին ու կ'ըսէին, Եթէ
ըսենք՝ Երկինքէն, պիտի ըսէ, Հապա ինչո՞ւ չհաւա-
32 տացիք անոր. Իսկ եթէ ըսենք՝ Մարդոցմէ, ժողովուր-
դէն կը վախնային, վասն զի ամէնը *գիտէին Յով-
33 հաննէսը թէ ճշմարտապէս մարգարէ էր։ Եւ պա
տասխան տալով ըսին Յիսուսի, Չենք գիտեր. և Յի
սուս պատասխան տալով ըսաւ անոնց, Ես ալ ձե-
զի չեմ ըսեր թէ ինչ իշխանութիւնով կ'ընեմ այս
բաները։

## ԳԼ. ԺԲ

1 Եւ սկսաւ առակներով խօսիլ անոնց հետ — ըսել,
Մարդ մը այգի անկեց, ու անոր բոլորտիքը ցանկ
քաշեց, և ստորահնձան փորեց, ու աշտարակ շինեց,
և զանիկա մշակներուն յանձնեց, ու ինք օտար եր-
2 կիր մը գնաց։ Եւ ատենին ծառայ մը ղրկեց մշակնե-
րուն, որպէս զի մշակներէն այգիին պտուղէն առնէ։
3 Իսկ անոնք բռնեցին, ծեծեցին զանիկա ու պարապ
4 ճամբեցին։ Նորէն ուրիշ ծառայ մըն ալ ղրկեց ա-
նոնց, և զանիկա քարկոծելով գլուխը վիրաւորեցին
5 ու անարգուած ճամբեցին։ Եւ դարձեալ ուրիշ մը
ղրկեց, ու զանիկա սպաննեցին. և շատ ուրիշներ ալ
ղրկեց, որոնց մէկ քանիները ծեծեցին ու մէկ քանի-

*Յուն. ունէին

6 ները սպաննեցին։ Ուստի սիրելի որդի մըն ալ ունե-
նալով, վերջապէս զանիկա ալ ղրկեց անոնց՝ ըսելով,
7 Թերեւս ամչնան իմ որդիէս։ Բայց այն մշակները ըսին
իրարու, Ասիկա է ժառանգը. եկէք զանիկա սպան-
8 նենք, ու ժառանգութիւնը մերը ըլլայ։ Եւ բռնեցին
զանիկա ու սպաննեցին, և այգիէն դուրս հանեցին։
9 Ուստի այգիին տէրը ի՞նչ պիտի ընէ. պիտի գայ ու
կորսնցնէ մշակները, և այգին ուրիշներու պիտի տայ։
10 Եւ այս գիրը չէ՞ք կարդացեր, Թէ Այն քարը զոր շի-
նողները անարգեցին, անիկա անկիւնին գլուխը ե-
11 ղաւ. Ասիկա Տէրոջմէն եղաւ, և զարմանալի է մեր
աչքերուն։
12 Եւ կը փնտռէին թէ ինչպէս բռնեն զանիկա, բայց
ժողովուրդէն վախցան, քանզի իմացան որ այն առակը
իրենց համար ըսաւ, և ձգեցին զանիկա ու գացին։
13 Եւ փարիսեցիներէն ու Հերովդէսականներէն քանի
մը հոգի ղրկեցին անոր, որպէս զի խօսքով բռնեն զանի-
14 կա։ Եւ անոնք եկան ու ըսին անոր, Վարդապետ,
գիտենք որ ճշմարիտ ես, և մէկո՛ւն համար հոգ չէ,
քանզի մարդոց երեսպաշտութիւն չես ըներ, հապա
ճշմարտութեամբ Աստուծոյ ճամբան կը սորվեցնես.
Կայսրին տուրք տալ արժա՞ն է՝ թէ ոչ, տա՞նք՝ թէ
15 չտանք։ Եւ Յիսուս գիտնալով անոնց կեղծաւորու-
թիւնը՝ ըսաւ անոնց, Ինչո՞ւ զիս կը փորձէք. բերէք
16 ինծի դահեկան մը որ տեսնեմ։ Եւ անոնք բերին. ու
ըսաւ անոնց, Որո՞ւն է այս պատկերը ու գիրը. և ա-
17 նոնք ըսին անոր, Կայսրին։ Եւ Յիսուս պատասխան
տալով՝ ըսաւ անոնց, Զայն որ Կայսրինն է՝ Կայսրին
տուէք, և զայն որ Աստուծոյն է՝ Աստուծոյ տուէք.
ու զարմացան անոր վրայ։

18 Եւ անոր քով եկան Սադուկեցիները որոնք կ՚ըսեն
թէ յարութիւն չկայ, և անոր հարցուցին՝ ըսելով,
19 Վարդապետ, Մովսէս մեզի գրեց որ եթէ մէկուն եղ-
բայրը մեռնի, ու կինը ձգէ և զաւակ չձգէ, անոր
եղբայրը առնէ անոր կինը, և իր եղբօրը զաւակ հա-
20 նէ։ Արդ եօթը եղբայրներ կային, և առաջինը կին
21 առաւ ու մեռաւ և զաւակ չձգեց։ Ու երկրորդը ա-
ռաւ զանիկա ու մեռաւ, և ան ալ զաւակ չձգեց.
22 Նոյնպէս ալ երրորդը, Ու եօթն ալ զանիկա առին և
23 զաւակ չձգեցին. ամէնէն ետքը կինն ալ մեռաւ։ Ու-
րեմն յարութեան ատեն, երբ յարութիւն առնեն,
անոնցմէ որո՞ւն կինը պիտի ըլլայ. վասն զի եօթն ալ
24 զանիկա կին ունեցան։ Եւ Յիսուս պատասխան տա-
լով՝ անոնց ըսաւ, Ասոր համար չէ՞ որ մոլորած էք,
որ ոչ գիրքերը գիտէք և ոչ Աստուծոյ զօրութիւնը։
25 Քանզի երբ մեռելներէն յարութիւն առնեն, ոչ կին
կ՚առնեն և ոչ էրկան կը տրուին, հապա երկինքի
26 հրեշտակներուն պէս են։ Բայց մեռելներուն համար՝
թէ յարութիւն կ՚առնեն, Մովսէսի գիրքին մէջ չէ՞ք
կարդացեր մորենիին վրայ, ինչպէս Աստուած անոր
խօսեցաւ՝ ըսելով, Ես եմ Աբրահամի Աստուածը, և
27 Իսահակի Աստուածը, ու Յակոբի Աստուածը։ Անի-
կա մեռելներուն Աստուածը չէ, հապա կենդանինե-
րուն. ուրեմն դուք խիստ մոլորած էք։
28 Եւ դպիրներէն մէկը եկաւ, ու մտիկ կ՚ընէր անոնց՝
երբ վիճաբանութիւն կ՚ընէին, ու երբ տեսաւ թէ
աղէկ պատասխան տուաւ անոնց, հարցուց անոր
ըսելով, Ո՞ր է բոլոր պատուիրանքներուն առաջինը։
29 Եւ Յիսուս պատասխանեց անոր, Բոլոր պատուիրանք-
ներուն առաջինը այս է. Լսէ, ով Իսրայէլ, մեր Տէր

30 Աստուածը մէկ Տէր է. Եւ քու Տէր Աստուածդ սի-
րես քու բոլոր սրտէդ, և քու բոլոր անձէդ, ու քու
բոլոր մտքէդ, և քու բոլոր զօրութենէդ. ասիկա է
31 առաջին պատուիրանքը։ Ու երկրորդը ասոր նման,
Քու ընկերդ սիրես քու անձիդ պէս. ասոնցմէ մեծ
32 ուրիշ պատուիրանք չկայ։ Եւ դպիրը ըսաւ անոր,
Աղէկ, վարդապետ, շիտակ խօսեցար թէ Աստուած
33 մէկ է, և անկէ զատ ուրիշ մը չկայ, Եւ բոլոր սրտէ,
ու բոլոր մտքէ, և բոլոր անձէ, ու բոլոր զօրութե-
նէ զանիկա սիրելը, ու ընկերը իր անձին պէս սի-
34 րելը ամէն ողջակէզներէ ու զոհերէ աւելի է։ Եւ Յի-
սուս տեսնելով որ անիկա խելացութիւնով պատաս-
խան տուաւ, ըսաւ անոր, Աստուծոյ թագաւորու-
թենէն հեռու չես. և ա՛լ ուրիշ մէկը չէր համար-
ձակեր անոր բան մը հարցնելու։

35 Եւ Յիսուս երբ տաճարին մէջ կը սորվեցնէր, պա-
տասխան տուաւ ու ըսաւ, Դպիրները ի՞նչպէս կ՚ըսեն
36 թէ Քրիստոս Դաւիթի որդին է. Եւ ինք Դաւիթ Սուրբ
Հոգիով կ՚ըսէ, Տէրը իմ Տէրոջս ըսաւ, Նստէ իմ
աջ կողմս, մինչև քու թշնամիներդ ոտքերուդ պատ-
37 ուանդան ընեմ։ Ուրեմն Դաւիթ ինք որ զանիկա Տէր
կը կոչէ, ի՞նչպէս անիկա անոր որդին կ՚ըլլայ. և ժո-
ղովուրդէն շատերը յօժարութեամբ մտիկ կ՚ընէին
անոր։

38 Եւ իր վարդապետութեանը մէջ կ՚ըսէր անոնց,
Զգուշացէք դպիրներէն, որոնք կ՚ուզեն փառաւոր
հանդերձներով պտըտիլ, և շուկաներուն մէջ բա-
39 րեւներ կը փնտռեն, Ու ժողովարաններուն մէջ առա-
ջին աթոռները, և ընթրիքներու մէջ առաջին բազ-
40 մոցները. Որոնք որբեւայրիներուն տուները կ՚ուտեն,

ու ծարփոյ երեւնալու համար աղօթքը կ'երկնցնեն.
ասոնք աւելի դատապարտութիւն պիտի ընդունին։
41 Եւ Յիսուս գանձանակին դիմաց նստած՝ կը նայէր
թէ ինչպէս ժողովուրդը գանձանակին մէջ ստակ
42 կը ձգէ. և շատ հարուստներ շատ բան ձգեցին։ Աղ-
քատ որբևայրի մըն ալ եկաւ ու երկու լումայ ձը-
43 գեց, որ նաքարակիտ մը կ'ընէ։ Եւ իր աշակերտները
իրեն կանչելով՝ ըսաւ անոնց, Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի,
որ այս աղքատ որբևայրին գանձանակը ստակ ձգողնե-
44 րուն ամէնէն աւելի ձգեց. Վասն զի ամէնը իրենց
աւելցածէն ձգեցին, բայց ասիկա իր չքաւորութե-
նէն՝ ունեցածին բոլորը ձգեց, իր բոլոր ապրուստը։

## ԳԼ ԺԳ

1 Ու երբ տաճարէն դուրս կ'ելլէր, իր աշակերտներէն
մէկը ըսաւ իրեն, Վարդապետ, նայէ ինչպէս քարեր
2 են, և ինչ կերպ շէնքեր։ Եւ Յիսուս պատասխան
տալով՝ ըսաւ անոր, Կը տեսնե՞ս այդ մեծ շէնքերը.
քար մը քարի վրայ պիտի չմնայ որ չքակուի։
3 Ու երբ անիկա Ձիթենեաց լեռը տաճարին դիմաց
նստեր էր, Պետրոս ու Յակոբոս և Յովհաննէս ու Անդ-
4 րէաս հարցուցին իրեն առանձին, Ըսէ մեզի, ե՞րբ
պիտի ըլլան այդ բաները, և ի՞նչ նշան պիտի ըլլայ
5 այդ ամէն բաներուն կատարուելու ատենը։ Եւ Յի-
սուս պատասխան տուաւ անոնց ու սկսաւ ըսել, Զգուշ
6 կեցէք, չըլլայ որ մէկը ձեզ խաբէ. Վասն զի շատերը
պիտի գան իմ անունովս ու ըսեն թէ Ես եմ Քրիս-
7 տոսը, ու շատերը պիտի մոլորեցնեն։ Բայց երբ լսէք
պատերազմներ և պատերազմներու լուրեր՝ մի խռո-

վիք, վասն զի պէտք է ըլլալ. բայց դեռ վերջը չէ։
8 Վասն զի ազգ ազգի վրայ պիտի ելլէ, ու թագաւո-
րութիւն թագաւորութեան վրայ, և տեղ տեղ երկ-
րաշարժութիւններ պիտի ըլլան. սովեր ու խռովու-
թիւններ ալ պիտի ըլլան. ասոնք ցաւերուն սկիզբ-
9 ներն են։ Զգուշացէք ձեր անձերուն. քանզի ձեզ
ատեաններու պիտի մատնեն, ու ժողովարաններուն
մէջ ձեզ պիտի ծեծեն, և իմ անուանս համար կու-
սակալներու ու թագաւորներու առջև պիտի կենաք՝
10 անոնց վկայութիւն ըլլալու համար։ Եւ առաջ պէտք
11 է որ աւետարանը քարոզուի բոլոր ազգերուն։ Բայց
երբ ձեզ մատնելու տանին, առաջուընէ հոգ մի ընէք
և մի մտածէք թէ ինչ պիտի խօսիք, հապա այն ժա-
մուն ինչ որ ձեզի տրուի՝ զանիկա խօսեցէք. վասն զի
ոչ թէ դուք էք որ կը խօսիք, հապա Հոգին Սուրբ։
12 Ու եղբայր եղբայրը մահուան պիտի մատնէ, և
հայրը՝ որդին, և որդիներ ծնողքներուն վրայ
13 պիտի ելլեն ու մեռցնեն զանոնք։ Եւ իմ անուանս
համար ամէնուն ատելի պիտի ըլլաք. բայց ով որ
14 մինչև վերջը համբերէ՝ անիկա պիտի ապրի։ Ու երբ
տեսնէք աւերմունքին պղծութիւնը՝ որ Դանիէլ մար-
գարէին ձեռքով ըսուած է, թէ արժան չեղած տեղը
կը կենայ, (ով որ կարդայ՝ թող հասկնայ,) այն ա-
տեն Հրէաստանի մէջ եղողները լեռները թող փախ-
15 չին. Եւ ան որ տանիքին վրայ է՝ թող տուն չիջնէ, ու
16 չմտնէ իր տունէն բան մը առնելու. Եւ ան որ ար-
տին մէջ է՝ թող ետ չդառնայ իր հանդերձը առ-
17 նելու։ Բայց վա՜յ այն օրերը յղի եղողներուն ու ծիծ
18 տուողներուն։ Եւ աղօթք ըրէք որ ձեր փախչիլը ձմեռը
19 չըլլայ։ Քանզի այն օրերը այնպիսի նեղութիւն պիտի

ըլլայ, որուն նմանը Աստուծոյ ստեղծած արարած-
ներուն սկիզբէն մինչև հիմա եղած չէ, ոչ ալ պիտի
20 ըլլայ։ Եւ եթէ Տէրը այն օրերը չկարճեցնէր, բնաւ
մարմին մը պիտի չազատէր. բայց ընտրեալներուն հա-
21 մար զորոնք ընտրեց՝ այն օրերը կարճեցուց։ Եւ այն
ատեն եթէ մէկը ձեզի ըսէ, Ահա հոս է Քրիստոսը՝
22 կամ Ահա հոն, մի հաւատաք. Վասն զի սուտ Քրիս-
տոսներ և սուտ մարգարէներ պիտի ելլեն, ու նշան-
ներ և հրաշքներ պիտի ցուցնեն, որպէս զի եթէ կա-
23 րելի էր, ընտրեալներն ալ մոլորեցնեն։ Իսկ դուք
զգոյշ կեցէք. ահա առաջուընէ ըսի ձեզի ամենը։
24 Բայց այն օրերը այն նեղութենէն ետև արեգակը
25 պիտի խաւարի, ու լուսինը իր լոյսը պիտի չտայ, Եւ
աստղերը երկինքէն պիտի թափթփին, ու երկինքին
26 մէջի զօրութիւնները պիտի շարժին։ Եւ այն ատեն
պիտի տեսնեն Որդին մարդոյ՝ ամպերու մէջ եկած
27 մեծ զօրութիւնով ու փառքով։ Եւ այն ատեն իր
հրեշտակները պիտի ղրկէ, ու իր ընտրեալները պիտի
ժողվէ չորս հովերէն, երկրի ծայրէն մինչև երկինքի
28 ծայրը։ Թզենիէն առակ մը սորվեցէք. երբ անոր ոս-
տերը կը կակուղնան ու տերևները կը ցցուին, գիտէք
29 թէ ամառը մօտ է։ Նոյնպէս ալ դուք երբ այս բա-
ները եղած տեսնէք, գիտցէք որ մօտ է դռներուն
30 քով։ Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, որ այս ազգը պիտի
31 չանցնի, մինչև որ այս ամէն բաները ըլլան։ Երկինք
ու երկիր պիտի անցնին, բայց իմ խօսքերս բնաւ պիտի
32 չանցնին։ Իսկ այն օրուան ու ժամուն համար մէ՛կը
չգիտեր, ոչ երկինքի մէջ եղող հրեշտակները և ոչ
33 Որդին, հապա միայն Հայրը։ Զգոյշ կեցէք, արթուն
մնացէք և աղօթք ըրէք, վասն զի չէք գիտեր ատենը

34 Ե՛րբ է։ Ինչպէս օտար երկիր գացող մարդ մը իր
տունը կը թողու, ու իր ծառաներուն իշխանութիւն
կու տայ, և ամէն մէկուն իր գործը, ու դռնապա-
35 նին կ'ապսպրէ որ արթուն կենայ։ Ուրեմն արթուն
կեցէք, վասն զի չէք գիտեր թէ ե՛րբ կու գայ տա-
նուտէրը, իրիկո՞ւնը՝ թէ կէսգիշերի՞ն՝ թէ հաւա-
36 խօսի՞ն և թէ առաւօտեան։ Չըլլայ որ յանկարծակի
37 գայ ու ձեզ քունի մէջ գտնէ։ Եւ ինչ որ կ'ըսեմ
ձեզի՝ ամէնուն կ'ըսեմ, Արթուն կեցէք։

## ԳԼ. ԺԴ

1 Եւ երկու օրէն ետև զատիկ ու բաղարջակերք էր.
և քահանայապետները ու դպիրները կը փնտռէին
թէ ինչպէս նենգութեամբ բռնեն զանիկա ու մեռ-
2 ցընեն։ Բայց կ'ըսէին թէ Ոչ տօնին ատենը, որպէս
զի ժողովուրդին մէջ խռովութիւն չըլլայ։
3 Ու երբ ինք Բեթանիա էր բորոտ Սիմոնի տունը
սեղան նստած, կին մը եկաւ՝ որ շիշ մը պատուական
սուղ նարդոսի իւղ ունէր, և կոտրեց այն շիշը ու
4 անոր գլխուն վրայ թափեց։ Եւ կային ոմանք որ կը
դժուարէին ու կ'ըսէին, Ինչո՞ւ համար եղաւ այդ
5 իւղին կորուստը. Քանզի այդ [իւղը] երեք հարիւր
դահեկանէն աւելի կրնար ծախուիլ ու աղքատներուն
6 տրուիլ. և սաստիկ կը յանդիմանէին զանիկա։ Բայց
Յիսուս ըսաւ, Թող տուէք ասոր, ինչո՞ւ անհանգիստ
7 կ'ընէք ատիկա. բարի գործ մը գործեց ինծի։ Վասն
զի աղքատները ամէն ատեն ձեզի հետ ունիք, ու երբ
ուզէք, կրնաք անոնց բարիք ընել, բայց զիս ամէն
8 ատեն չունիք։ Ատիկա ինչ որ ունէր՝ ըրաւ. առաջ-

9 ուընէ իմ մարմինս օծեց իմ թաղումիս համար։ Ճշ-
մարիտ կ'ըսեմ ձեզի, թէ Բոլոր աշխարհի մէջ, ուր
որ այս աւետարանը քարոզուի, ասոր ըրածն ալ պի-
տի խօսուի՝ իրեն յիշատակ ըլլալու համար։
10 Եւ Յուդա Իսկարիովտացի, տասներկուքէն մէկը,
գնաց քահանայապետներուն, որ զանիկա մատնէ
11 անոնց։ Անոնք ալ լսելով ուրախացան, ու իրեն
ստակ տալ խոստացան, և կը փնտռէր թէ ինչպէս
պատեհութիւնով մը մատնէ զանիկա։
12 Եւ բաղարջակերաց առաջին օրը, երբ զատիկը կը
մորթէին, անոր աշակերտները ըսին իրեն, Ո՞ւր կ'ու-
զես երթանք պատրաստենք՝ որպէս զի զատիկը ու-
13 տես։ Եւ իր աշակերտներէն երկուքը ղրկեց ու ըսաւ
անոնց, Գացէք քաղաքը, ու ձեզի մարդ մը պիտի
պատահի՝ որ ուսին վրայ ջուրի սափոր մը կը տանի,
14 գացէք անոր ետեւէն։ Եւ ուր որ մտնէ, տանը տէրոջը
ըսէք. Վարդապետը կ'ըսէ, Ո՞ւր է օթեւանը, ուր
15 աշակերտներուս հետ մէկտեղ զատիկը ուտեմ։ Ան
ալ ձեզի յարդարուած — պատրաստ մեծ վերնա-
տուն մը պիտի ցուցնէ. հոն պատրաստեցէք մեզի։
16 Եւ իր աշակերտները գացին ու քաղաքը մտան, և
ինչպէս իրենց ըսաւ՝ այնպէս գտան, և զատիկը պատ-
րաստեցին։
17 Ու երբ իրիկուն եղաւ, տասներկուքին հետ մէկ-
18 տեղ եկաւ։ Ու երբ սեղան նստան և կ'ուտէին, ըսաւ
Յիսուս, Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի որ ձեզմէ մէկը որ
19 հիմա ինծի հետ կ'ուտէ, զիս պիտի մատնէ։ Եւ ա-
նոնք սկսան տրտմիլ, ու մէկիկ մէկիկ ըսել անոր,
20 Միթէ ե՞ս եմ. և ուրիշ մը՝ Միթէ ե՞ս եմ։ Անիկա
պատասխան տուաւ ու ըսաւ անոնց, Այդ տասներ-

կուքեն մէկը՝ որ ինծի հետ իր ձեռքը պնակը խո-
21 թեց։ Յիրաւի Որդին մարդոյ կ'երթայ, ինչպէս
գրուած է իրեն համար. բայց վա՜յ այն մարդուն,
որուն ձեռքով Որդին մարդոյ կը մատնուի. աղէկ
էր այն մարդուն որ ծնած չըլլար։
22 Եւ քանի որ անոնք կուտէին, Յիսուս հաց առաւ,
օրհնեց ու կտրեց, և տուաւ անոնց ու ըսաւ, *Առէք,
23 այս է իմ մարմինս։ Եւ գաւաթը առաւ, գոհա-
ցաւ, ու տուաւ անոնց, և ամէնն ալ խմեցին անկէ։
24 Ու ըսաւ անոնց, Ասիկա է իմ արիւնս Նոր ուխտի,
25 որ շատերու համար կը թափուի։ Ճշմարիտ կ'ըսեմ
ձեզի, Ասկէ ետև որթին բերքէն բնաւ պիտի չխմեմ
մինչև այն օրը երբ զանիկա նոր խմեմ Աստուծոյ
թագաւորութեանը մէջ։
26 Եւ օրհնութիւն մը երգելէ ետև Ձիթենեաց լեռը
27 ելան։ Եւ Յիսուս ըսաւ անոնց, Ամէնդ ալ այս գի-
շեր իմ վրայովս պիտի գայթակղիք. վասն զի գրուած
է թէ Հովիւը պիտի զարնեմ, ու ոչխարները պիտի
28 ցրուին։ Բայց յարութիւն առնելէս ետև ձեզմէ
29 առաջ Գալիլեա պիտի երթամ։ Իսկ Պետրոս ըսաւ
անոր, Թէպէտ ամէնն ալ գայթակղին, բայց ոչ թէ
30 ես։ Եւ Յիսուս ըսաւ անոր, Ճշմարիտ կ'ըսեմ քեզի,
որ դուն ալ այս գիշեր դեռ հաւը երկու անգամ
31 չխօսած երեք անգամ զիս պիտի ուրանաս։ Բայց
Պետրոս աւելի կը պնդէր ու կ'ըսէր, Թէև քեզի հետ
մեռնիլ պէտք ըլլայ ինծի, բնաւ քեզ պիտի չու-
րանամ. Նոյնպէս կ'ըսէին ամէնն ալ։
32 Եկան այն տեղը որուն անունը Գեթսեմանի էր, ու

---

*Ոմանք, Առէք, կերէք

ըսաւ իր աշակերտներուն, Հոս նստեցէք, մինչև որ
33 ես աղօթք ընեմ։ Եւ իրեն հետ առնելով Պետրոսը
ու Յակոբոսը և Յովհաննէսը, սկսաւ խռովիլ և վշտա-
34 նալ։ Այն ատեն ըսաւ անոնց, Իմ անձս մեռնելու
35 չափ տրտում է. հոս կեցէք և արթուն մնացէք։ Ու
քիչ մը առաջ երթալով՝ իր երեսին վրայ գետինը ին-
կաւ և աղօթք ըրաւ, որ եթէ կարելի է, այն ժամը
36 իրմէ անցնի։ Եւ ըսաւ, Աբբա Հայր, ամէն բան քեզի
հնարաւոր է, այս գաւաթը ինծմէ անցուր. բայց ոչ
թէ ինչպէս ես կ'ուզեմ, հապա ինչպէս դուն կ'ուզես։
37 Եւ եկաւ ու զանոնք քնացած գտաւ. և ըսաւ Պետ-
րոսի, Սիմոն, կը քնանա՞ս. չկրցա՞ր ժամ մը արթուն
38 կենալ։ Արթուն կեցէք և աղօթք ըրէք, որպէս զի
փորձութեան մէջ չմտնէք. հոգին յօժար է, բայց
39 մարմինը տկար։ Եւ նորէն գնաց աղօթք ըրաւ՝ նոյն
40 խօսքը ըսելով։ Եւ դարձաւ ու զանոնք նորէն քնա-
ցած գտաւ, վասն զի աչքերնին ծանրացած էր, և
41 չէին գիտեր թէ ինչ պատասխան տան անոր։ Երրորդ-
անգամ ալ եկաւ ու ըսաւ անոնց, Ասկէ ետև
քնացէք ու հանգչեցէք. բաւական է, ժամը հասաւ.
ահա Որդին մարդոյ մեղաւորներուն ձեռքը կը մատ-
42 նուի։ Ելէք երթանք, ահա մօտեցաւ անիկա որ զիս
պիտի մատնէ։

43 Եւ դեռ անիկա այս որ կը խօսէր, իսկոյն Յուդա,
տասներկուքէն մէկը, եկաւ, և իրեն հետ քահա-
նայապետներուն և դպիրներուն ու ծերերուն կողմէն
44 շատ բազմութիւն՝ սուրերով ու բիրերով։ Եւ զա-
նիկա մատնողը անոնց նշան մը տուեր էր՝ ըսելով,
Ով որ ես համբուրեմ՝ ան է, բռնեցէք զանիկա և
45 զգուշութեամբ տարէք։ Ու անիկա գալով շուտ մը

մօտեցաւ անոր և ըսաւ, Ռաբբի, Ռաբբի, ու համ-
46 բուրեց զանիկա։ Եւ անոնք ձեռք զարկին անոր ու
47 բռնեցին զանիկա։ Եւ քովը կայնողներէն մէկը սուրը
քաշեց ու զարկաւ քահանայապետին ծառային, ու
48 անոր ականջը մէկդի հանեց։ Եւ Յիսուս պատասխան
տալով՝ ըսաւ անոնց, Իբր թէ աւազակի՞ վրայ ելաք
49 սուրերով ու բիրերով զիս բռնելու։ Ամէն օր ձեր քով
էի ու տաճարին մէջ կը սորվեցնէի, և զիս չբռնեցիք.
50 բայց որպէս զի գիրքերը կատարուին։ Այն ատեն բո-
51 լոր աշակերտները թողուցին զանիկա ու փախան։ Եւ
երիտասարդ մը անոր ետևէն կ'երթար՝ մերկ մարմնին
վրայ կտաւ մը առած, ու երիտասարդները զանիկա
52 բռնեցին. Ան ալ կտաւը թողուց ու մերկ փախաւ
անոնցմէ։
53 Եւ տարին Յիսուսը քահանայապետին, ու անոր
քով ժողվուեցան բոլոր քահանայապետները և ծե-
54 րերը ու դպիրները։ Եւ Պետրոս հեռուանց անոր ե-
տևէն գնաց մինչև ներսը, քահանայապետին գաւի-
թը, և սպասաւորներուն հետ նստաւ, ու կրակին քով
55 կը տաքնար։ Իսկ քահանայապետները և բոլոր ժո-
ղովքը Յիսուսի դէմ վկայութիւն կը փնտռէին, որ-
56 պէս զի զանիկա մեռցնեն, և չէին գտներ. Վասն զի
շատերը սուտ վկայութիւն կը վկայէին անոր դէմ,
57 ու վկայութիւնները իրարու համաձայն չէին։ Եւ ո-
մանք ելան սուտ վկայութիւն կ'ընէին անոր դէմ՝ ու
58 կ'ըսէին թէ, Մենք լսեցինք ատիկէ որ կ'ըսէր, Ես այդ
ձեռագործ տաճարը պիտի քակեմ, և երեք օրուան
մէջ ուրիշ մը պիտի շինեմ առանց ձեռագործի։
59 Բայց այնպէս ալ իրենց վկայութիւնը համաձայն
60 չէր։ Եւ քահանայապետը մէջտեղը ոտք ելլելով՝ հար-

ցուց Յիսուսի ու ըսաւ, Պատասխան մը չե՞ս տար.
61 ի՞նչ կը վկայեն ասոնք քեզի դէմ։ Բայց անիկա լուռ
կը կենար և պատասխան մը չէր տար. քահանայա-
պետը նորէն կը հարցնէր անոր ու կ'ըսէր, Դո՞ւն ես
62 Քրիստոսը, օրհնեալ Աստուծոյ Որդին։ Եւ Յիսուս
ըսաւ, Ես եմ. ու պիտի տեսնէք Որդին մարդոյ Զօ-
րութեան աջ կողմը նստած, ու երկինքի ամպերովը
63 եկած։ Եւ քահանայապետը իր հանդերձները պատ-
64 ռեց, ու ըսաւ, Ալ ի՞նչ պէտք են մեզի վկաներ։ Ասոր
հայհոյութիւնը լսեցիք. ձեզի ի՞նչպէս կ'երեւնայ. և
ամէնը դատապարտեցին զանիկա թէ մահապարտ է։
65 Եւ ոմանք սկսան թքնել անոր ու երեսը ծածկել
և բռունցքով ծեծել ու ըսել, Մարգարէացիր. ու
սպասաւորները ապտակ կը զարնէին անոր։
66 Եւ Պետրոս վարը գաւիթն էր, ու քահանայապե-
67 տին աղախիններէն մէկը եկաւ, Ու տեսնելով Պետ-
րոսը որ կը տաքնար, նայեցաւ անոր ու ըսաւ, Դուն ալ
68 Յիսուս Նազովրեցիին հետ էիր։ Բայց անիկա ուրա-
ցաւ ու ըսաւ, Չեմ գիտեր և չեմ հասկնար թէ դուն
ի՛նչ կը խօսիս. ու երբ դուրս ելաւ գաւիթին դրանը
69 առջև, հաւը խօսեցաւ։ Եւ աղախինը նորէն տեսաւ
զանիկա, ու սկսաւ բոլորտիքը կայնողներուն ըսել,
70 թէ Աս ալ անոնցմէ է։ Եւ անիկա նորէն ուրացաւ։
Ու քիչ մը ատենէն ետքը՝ նորէն բոլորտիքը կայնող-
ները ըսին Պետրոսի, Արդարև դուն անոնցմէ ես,
վասն զի Գալիլեացի ես, և քու զրուցուածքդ ալ
71 նման է անոնց։ Բայց անիկա սկսաւ անիծել ու եր-
դում ընել՝ ըսելով թէ Ես այն մարդը չեմ ճանչնար,
72 որու համար դուք կ'ըսէք։ Եւ իսկոյն երկրորդ ան-
գամ հաւը խօսեցաւ. ու Պետրոս միտքը բերաւ այն

խօսքը զոր Յիսուս իրեն ըսեր էր թէ Դեռ հաւը երկու անգամ չխօսած՝ դուն երեք անգամ պիտի ուրանաս զիս. ու սկսաւ լալ։

## ԳԼ. ԺԵ

1 Եւ առտուանց շուտ մը քահանայապետները ծե-
րերուն ու դպիրներուն հետ՝ և բոլոր ժողովքն ալ
խորհուրդ ըրին, Յիսուսը կապեցին ու տարին մատ-
2 նեցին Պիղատոսի, Եւ Պիղատոս հարցուց անոր ու-
ըսաւ, Դո՞ւն ես Հրէից Թագաւորը, անիկա ալ պա-
3 տասխան տալով ըսաւ անոր, Դուն կ'ըսես։ Եւ քա-
հանայապետները շատ ամբաստանութիւն կ'ընէին ա-
4 նոր վրայով։ Ու Պիղատոս նորէն հարցուց անոր՝ ըսե-
լով, Պատասխան մը չե՞ս տար. նայէ ո՛րչափ քեզի
5 դէմ կը վկայեն։ Եւ Յիսուս ասկէ ետքը պատասխան
մը չտուաւ, մինչև որ Պիղատոս զարմացաւ։
6 Բայց տօնին ատենը կապուած մը կ'արձակէր ա-
7 նոնց, ո՛րը որ իրենք ուզէին։ Եւ մէկը կար Բարաբբաս
անուանուած իր ընկեր խռովարարներուն հետ կապուած.
որոնք խռովութեան ատենը մարդասպանութիւն ըրեր
8 էին։ Եւ ժողովուրդը աղաղակելով սկսաւ խնդրել
9 որ ընէ ինչպէս միշտ կ'ընէր իրենց։ Եւ Պիղատոս ա-
նոնց պատասխան տուաւ ու ըսաւ, Կ'ուզէ՞ք որ Հրէից
10 Թագաւորը արձակեմ ձեզի։ Քանզի գիտէր որ քա-
հանայապետները նախանձի համար մատներ էին զա-
11 նիկա. Բայց քահանայապետները ժողովուրդը գրգռ-
ուեցին որ ինքըն յաւէտ Բարաբբան իրենց արձա-
12 կել։ Նորէն Պիղատոս պատասխան տուաւ ու ըսաւ
անոնց, Հապա Հրէից Թագաւոր ըսածնիդ ինչ

13 կ՚ուզէք որ ընեմ։ Եւ անոնք նորէն կ՚աղաղակէին,
14 Խաչը հանէ՛ զանիկա։ Պիղատոս ըսաւ անոնց, Բայց
ի՞նչ չար գործ ըրած է անիկա. և անոնք ա՛լ ա-
ւելի կ՚աղաղակէին — Կ՚ըսէին, Խաչը հանէ զանիկա։
15 Եւ Պիղատոս ժողովուրդը գոհ ընել ուզելով՝ Բա-
րաբբան արձակեց անոնց, ու Յիսուսը ծեծելով՝ ձեռք
տուաւ որպէս զի խաչուի։
16 Եւ զինուորները ներս տարին զանիկա գաւիթը,
այսինքն պալատը, և բոլոր գունդը մէկտեղ կանչե-
17 ցին. Ու հագցուցին անոր ծիրանիներ, և փշեղէն
18 պսակ հիւսելով՝ անոր գլուխը դրին. Ու սկսան բարև
տալ անոր — ըսել, Ողջոյն քեզ, Հրէից Թագաւոր։
19 Եւ անոր գլուխը եղէգով կը ծեծէին ու կը թքնէին
անոր, և ծունկի վրայ գալով երկրպագութիւն
20 կ՚ընէին անոր։ Ու երբ ծաղր ըրին զանիկա, ծիրանի-
ները վրայէն հանեցին և իր հանդերձները հագցու-
ցին անոր, ու դուրս հանեցին զանիկա՝ որպէս զի
խաչը հանեն։
21 Եւ Սիմոն Կիւրենացի, Աղեքսանդրոսի և Ռուփոսի
հայրը, որ անկէ կ՚անցնէր արտէն եկած, պահակ
22 բռնեցին որպէս զի անոր խաչը վերցնէ։ Ու տարին
զանիկա Գողգոթա ըսուած տեղը, որ կը թարգմանո-
33 ուի Գանկի տեղ,) Եւ անոր զմուռսով խառնուած
24 գինի տուին որ խմէ, բայց ինք չառաւ։ Ու խաչը հա-
նեցին զանիկա, և անոր հանդերձները բաժնեցին՝
անոնց վրայ վիճակ ձգելով թէ ո՛վ ինչ պիտի առ-
25 նէ։ Ժամը երեքն էր ու խաչը հանեցին զանիկա։
26 Եւ անոր յանցանքի գիրը գրուած էր Ին Հրէից Թա-
27 գաւորն է։ Ու անոր հետ երկու աւազակ խաչը հա-
նեցին. մէկը անոր աջ կողմէն ու մէկը ձախ կողմէն։

28 Եւ կատարուեցաւ այն գիրը որ կ'ըսէ թէ Անօրէն-
29 ներու հետ սեպուեցաւ։ Եւ անոնք որ կ'անցնէին, կը
հայհոյէին անոր, գլուխնին կը շարժէին ու կ'ըսէին,
Աւա՜ղ, որ տաճարը կը քակէիր, և երեք օրուան մէջ
30 կը շինէիր. Ինքզինքդ ազատէ ու իջիր այդ խաչէն։
31 Նոյնպէս ալ քահանայապետները դպիրներուն հետ
իրենց մէջ ծաղր ընելով՝ կ'ըսէին, Ուրիշները ազա-
32 տեց, ինքզինք չկրնար ազատել։ Այդ Քրիստոսը, Իս-
րայէլի Թագաւորը, թող հիմա խաչէն վար իջնէ,
որպէս զի տեսնենք ու հաւատանք. և իրեն հետ խաչը
ելլողները կը նախատէին զանիկա։
33 Ու վեցերորդ ժամը հասածին պէս՝ բոլոր երկրին
34 վրայ խաւար եղաւ մինչև իններորդ ժամը։ Եւ իննե-
րորդ ժամուն՝ Յիսուս մեծ ձայնով աղաղակեց ու
ըսաւ, Էլօի, Էլօի, լա՞մա սաբաքթանի. որ կը թարգ-
մանուի, Աստուած իմ, Աստուած իմ, ինչո՞ւ զիս
35 թողուցիր։ Եւ քովը կայնողներէն ոմանք երբ լսեցին՝
36 կ'ըսէին թէ Եղիան կը կանչէ։ Ու մէկը վազեց սպունգ
մը քացախով լեցուց, ու եղէգի մը անցընելով՝ տուաւ
անոր որպէս զի խմէ, և ըսաւ, Թող տուէք, տես-
նենք թէ Եղիա կու գա՞յ զանիկա վար իջեցնելու։
37 Եւ Յիսուս մեծ ձայն մը հանեց ու հոգի տուաւ։
38 Ու տաճարին վարագոյրը երկուքի պատռեցաւ վերէն
39 վար։ Եւ հարիւրապետը որ անոր դիմաց կեցեր էր,
տեսնելով որ այսպէս աղաղակելով հոգի տուաւ,
40 ըսաւ. Արդարև Որդի Աստուծոյ էր այս մարդը։ Կիներ
ալ կային, որոնք հեռուանց կը նայէին, որոնց մէջ էր
Մարիամ Մագդաղենացի, և պզտիկ Յակոբոսի ու
41 Յովսէսի մայրը Մարիամ, և Սողոմէ, Որոնք երբ Յի-
սուս Գալիլեա էր իր ետևէն կ'երթային, և իրեն

սպասաւորութիւն կ'ընէին. և ուրիշ շատ կիներ ալ՝
որոնք իրեն հետ Երուսաղէմ ելեր էին։
42 Ու երբ իրիկուն եղաւ, այն օրը ուրբաթ, այսինքն
43 շաբաթին առջի օրը ըլլալով, Յովսէփ Արիմաթացի,
երեւելի խորհրդական մը, որ ինք ալ Աստուծոյ թա-
գաւորութեանը կը սպասէր, եկաւ ու համարձակու-
թիւն ընելով՝ Պիղատոսի քով մտաւ, և Յիսուսի
44 մարմինը խնդրեց։ Ու Պիղատոս զարմացաւ որ արդէն
մեռած ըլլայ. և հարիւրապետը իրեն կանչելով՝ հար-
45 ցուց անոր թէ Շա՞տ ատեն է որ մեռաւ։ Ու երբ
ստոյգը իմացաւ հարիւրապետէն, մարմինը Յովսէփի
46 շնորհեց, Եւ Յովսէփ կտաւ գնեց, ու զանիկա վար
իջեցնելով՝ կտաւովը փաթթեց, ու դրաւ գերեզմանի
մը մէջ՝ որ քարէ փորուած էր. և քար մը գլորեց գե-
47 րեզմանին դուռը։ Իսկ Մարիամ Մագդաղենացի ու
Յովսէփի մայրը Մարիամ տեսան այն տեղը ուր դրը-
ուեցաւ։

## ԳԼ. ԺԶ

1 Ու երբ շաբաթը անցաւ, Մարիամ Մագդաղենացի
և Յակոբոսի մայրը Մարիամ և Սողոմէ խունկեր ծա-
2 խու առին, որպէս զի գան օծեն զանիկա։ Եւ մէկ-
շաբթի առաւուանց շատ կանուխ, երբ արեւը կը ծա-
3 գէր, եկան գերեզմանը, Ու իրարու կ'ըսէին, Քարը ո՞վ
4 պիտի գլորէ մեզի գերեզմանին դռնէն, (Ու նայեցան
տեսան որ քարը գլորուած էր,) վասն զի շատ մեծ
5 էր։ Եւ ներս գերեզմանը մտնելով՝ երիտասարդ մը
տեսան որ աջ կողմը նստեր էր ճերմակ պատմուճան
6 հագած, ու զարհուրեցան։ Եւ անիկա ըսաւ անոնց,

Մի՛ զարհուրիք. Յիսուս Նազովրեցին կը փնտռէք, որ
խաչուեցաւ. անիկա յարութիւն առաւ, հոս չէ.
7 ահա այն տեղը ուր դրին զանիկա։ Բայց գացէք,
ըսէք անոր աշակերտներուն և Պետրոսին, Թէ ահա
ձեզմէ առաջ Գալիլեա կ'երթայ, հոն պիտի տեսնէք
8 զանիկա՝ ինչպէս ձեզի ըսաւ։ Եւ անոնք դողով ու
ապշութեամբ բռնուած՝ *ելան ու փախան գերեզ-
մանէն, և մարդո՛ւ բան չըսին, քանզի կը վախնային։
9 Յիսուս մէկշաբթի առտուանց յարութիւն առած
առաջ Մարիամ Մագդաղենացիին երեւցաւ, որմէ
10 եօթը դեւ հաներ էր։ Անիկա գնաց անոնց պատմեց՝
որոնք անոր հետ էին, երբ սուգ կ'ընէին ու կու լային։
11 Իսկ անոնք երբ լսեցին թէ կենդանի է և թէ իրեն
երեւցաւ, չհաւատացին։
12 Ետքը ուրիշ կերպարանքով երեւցաւ անոնցմէ
13 երկուքին՝ որոնք քալելով արտը կ'երթային։ Եւ ա-
նոնք գացին ուրիշներուն պատմեցին, ու անոնց ալ
չհաւատացին։
14 Վերջը տասնըմէկին երեւցաւ, երբ սեղան նստած
էին, ու երեսնին զարկաւ իրենց անհաւատութիւնը
և սրտերնուն կարծրութիւնը, վասն զի որոնց որ
ինք երեւցաւ մեռելներէն յարութիւն առած՝ իրենք
չհաւատացին։
15 Եւ ըսաւ անոնց, Գացէք բոլոր աշխարհ, ու աւե-
16 տարանը քարոզեցէք բոլոր ստեղծուածներուն։ Ան
որ հաւատայ ու մկրտուի՝ պիտի փրկուի, և ան որ
17 չհաւատայ՝ պիտի դատապարտուի։ Եւ անոնք որ կը
հաւատան, այս նշանները անոնց հետ պիտի երթան.

---

*Ոմանք, շուտ ելան

Իմ անունովս դեւեր պիտի հանեն, նոր լեզուներ
18 պիտի խօսին. Ձեռքերնին օձեր պիտի բռնեն, եւ եթէ
մահառիթ դեղ մը խմեն, իրենց պիտի չվնասէ. Հի-
ւանդներու վրայ ձեռք պիտի դնեն, ու անոնք պիտի
առողջանան։
19 Արդ Տէրը անոնց հետ խօսելէն ետքը երկինք համ-
20 բարձաւ, ու Աստուծոյ աջ կողմը նստաւ։ Եւ անոնք
ելան ու ամէն տեղ կը քարոզէին, եւ Տէրը անոնց գոր-
ծակից էր, ու խօսքը կը հաստատէր այն նշաններով
որոնք անոնց հետ կ'երթային։ Ամէն։

---

PRINTED IN GREAT BRITAIN BY OFFSET LITHOGRAPHY BY
BILLING AND SONS LTD., GUILDFORD AND LONDON